# ՎԷՊՔ

# ՀՆՈՅՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ

# ՎԷՊՔ

# ՀՆՈՅՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ

## Քննութիւն

Մկրտիչ Էմին.

I only say suppose this supposition.

*Don Juan*, C. I, St. LXXXV.



ՄՈՍԿՎԱ.
Ի տպարանի Ալեքսանդրայ Գոթիէի
1850.



**ПЕЧАТАТЬ ПОЗВОЛЯЕТСЯ**

по опредѣленію Совѣта Лазаревскаго Института Восточныхъ Языковъ, на основаніи § 61 Высочайше утвержденнаго Устава оного Института. 10 Мая 1850 года.

Исправляющій должность Секретаря Совѣта, *Ивановъ*.



Առ մեզ չի՛ք պատմութիւն Գրականութեան ։ Զոր ինչ հայ և օտարազգի հեղինակք մինչ ցայս օր ժամանակի գրեցին ըստ այսմ մասին՝ լոկ տեղեկութիւնք են վասն մատենագրաց և գործոց նոցին, և այն Թերի բազմօք ։ Քննել ըստ կանոնաց մակացութեան զմատենագրութիւնս մերոցն, և ցուցանել զյատկութիւնս և զնշանակութիւն իւրաքանչիւրոցն ՚ի նոցանէ՝ որոշելով ՚ի նոսին զոր ինչ հեղինակին է սեպհական և զոր ինչ առ դարն, յորում կեցին՝ վերաբերելի, այդպիսի երկասիրութիւն՝ ցաւէ՛ ինձ ասել, անծանօթ է մերոցն ։ Այլ որովհետեւ չէ ուրուք ձեռնամուխ լեալ յայդպիսի գործ, յոյր սակս և յոլովք ՚ի բանասիրական խնդրոց, առ հայ դպրութիւն վերաբերեալք, մինչ ցարդ անլուծանելք մնան ։ ՚Ի սոցին սակի և «Ազգային Երգ» ունել պարտ է, որոց գոյութիւն առ մեզ՝ չգիտեմ է՞ր վասն, միակամ յամենեցունց ժխտի ։ Այդ կարծիք՝ ներելի ՚ի շրթունս օտարաց, անթողլի է մերայոց, որք ինքնակամ հրաժարին ՚ի հայրենի ժառանգութենէ ։ Քանզի լեալ են արդարև և առ մեզ՝ որպէս առ ամենայն ազինս աշխարհի առանց բացառութեան, ազգային երգք, որոց նշխարք ծածկեալ մնան ՚ի

Պատմութեան Մովսիսի Խորենացւոյ։ Յաւաջիկայ երկասիրութեանս գուն գործեցաք 'ի մի ժողովել զայն՝ ամբողջութիւն հաղորդելով նոցուն, և զնոցին ցուցանելով նշանակութիւն 'ի պատմութեան Հայոց։ Ընթերցողին է իմաստասիրել, յաջողեցաւ արդեօք այդ մեր երկասիրութիւն, թէ ոչ։

Բայց խնդրելի է՝ եթէ Էր սակս ոչ ախորժեցան բանասէրք 'ի քնին առնուլ զնշխարսդ զայդոսիկ, որ մի 'ի գլխաւոր աղբերաց Պատմութեան Քերթողահօրն երևի լինել։ Ըստ մեզ՝ ըմբռնումն քանի մի բառից, որոց նշանակութիւն անորոշ ստուգաբանեալ տեսանի 'ի Բառարանս մեր, թուի լինել միակ և եթ պատճառ անփոյթութեանդ։ Այսին իրի և մեք կարևոր դատիմք 'ի սկզբանս աստ առ կատարմանս աշխատասիրութեանս՝ 'ի քնին առեալ զայդոսիկ բառսըդ, որոշել զնոցին նշանակութիւն և ապա բուռն հարկանել զքննութենէ նշխարաց ազգային պատմական երգոց՝ պահպանելոց կամ յիշատակելոց 'ի Պատմութեան Խորենացւոյն։ Եւ այս են բառք, որք ըստ մեզ՝ մեկնութեան կարօտին. Վէպ, Վիպասան, Բամբ, Զրոյց, Բամբռել կամ Բամբռելիք։

'Ի սոցունց առաջինն, որ է Վէպ, բացատրի 'ի Նոր Բառարանին այսպէս. «Հին զրոյցք՝ իրական կամ ստայօդ, պատմութիւն արձակ կամ քերթողական.» (1) որ չէ ստուգաբանութիւն ճիշդ։ Վասնզի այդ բառ՝ գո-

---

(1) Տե՛ս Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի, Վենետիկ, 1836—37. հատ. Բ. եր. 819։

լով մին 'ի հնագոյն բառից լեզուի մերոյ, առ հինսն մեր զնոյն նշանակէր, զոր առ Յոյնս էպօս, այսինքն՝ պոեմաթիւն հերոիկական կամ պոեմական էպոպէագործութեան. ըստ Լատինաց՝ փիլոսոփայական էպոպէագործութիւն, ըստ Խորենացւոյ՝ պոեմութիւն ռազմաւորաց՝ 'ի Մատեանս Թագաւորաց ամփոփեալ, չափաբերական և ոչ արձակ։ Նա այս ապացուցանի բանիւք Քերթողահօրն, որ 'ի Պատմութեան իւրում 'ի բերելն զհանս վիպասանաց՝ ամենուրեք երգ կոչէ զայնս։ Ուրեմն Վէպն հնոց ոչ այլ ինչ էր, բայց եթէ հերոիկական պոեմութիւն չափաբերական, յորում զգործս քաջաց և ռազմաւորաց երգէին, որ և առ արդի Եւրոպացիս Épopée անուամբ սովորաբար յորջորջի։

Յետ այսորիկ Վիպասանք անուն ինքնին որոշեալ տեսանի, որոյ և նշանակութիւն յայտնի։ Քանզի եթէ Վէպն քերթողական պատմութիւն է չափաբերական, ուրեմն Վիպասանն էպոպէագործն է, զոր առ Եւրոպացիս poëte épique անուանեն։

Վիպասանն բարդեալ է 'ի վէպ և 'ի սան բառից, յորոց յետինդ արմատ է բայիս Սանեմ. իսկ սանեմ առ հինսն մեր նշանակէր Երգեմ։ Ուրեմն սանել վէպ նոյն է ընդ՝ երգել վէպ, ողբաձայնական երգ։ Նաև յաշխարհիկ լեզուի մերում պահպանեալ տեսանի այդ նախկին նշանակութիւն 'ի սովորական բանիս «վէպ սանել», որ է երգ երգել։

Զհակառակն Վիպի նախնիք մեր Զրոյց կոչէին, որ էր պատմութիւն արձակ և ոչ չափաբերական, հին աւանդութիւնք՝ բերանացի զրուցեալք, յանցանել

դարուց ժողովեալք և 'ի գիր արձանացուցեալք՝ ըստ Խորենացւոյն, որ ասէ «Յաժմ առ մեզ գտանին անբաւ Զրուցոյ Ծոփքանւոյ (²)· որ առ Եւրոպացիս die Sage, Cara, Сказанie կոչի։

Առասպել կամ Առասպելք առ մեզ յայլևայլ միտս առեալ լինի· բայց հնագոյն նշանակութիւն նորա է վիպասանութիւն կամ պատմութիւն, յորում նախնի ազգին դիւցազնօրէն պճնազարդութիւն աւանդէին։ Այսպէս 'ի կիր առեալ անսանի այդ բառ առ Քերթողահօրն 'ի բազում տեղիս, զոր Արևմտեայք սովորաբար Миѳъ, Mythe, Fable ասեն և 'ի հնումն առ նոսա vera narratio սահմանիւր։

Այսպէս Ճշդութեամբ նշանակեալ զզօրութիւն միոյ միոյ 'ի բառիցդ՝ բուռն հարցուք զքննութենէս, զոր իբրև առաջին քրտունք յասպարիսի Հայ Դպրութեան՝ 'ի դատաստան անաչառ բանասիրաց հանել ոչ դանդաղիմք։

(²) Պետր. ա. ԳԸ. Գ։

Ընդաբոյս է մարդոյ զարժանայիշատակն 'ի գործս ընկերին 'ի յիշողականին դրոշմել և յետագայիցն հաղորդել աւանդութեամբ։ Արդարև ազգոյ իմն եղանակաւ ներգործել ունէին յերևակայութիւն նորա սխրագործութիւնք նախնի նահապետաց և առաջնորդաց ժողովրդեան՝ պաշտպան կացելոց նոցա 'ի թըշնամեաց յարձակմանէ և կամ յանակնկալն տագնապէ՝ 'ի վերայ հասելոյ։ Յայսոսիկ դէպս ոչ շատանայր նա զիրացն եղելոց ևեթ պատմելով ընկերին. քանզի բոցավառեալն երևակայութիւն սովորական նորա խօսից նոր իմն կեանս հաղորդելով յերգս դաշնաւորս յեղափոխեալ ձևացուցանէր զայնս։ Մայապէս առ ամենայն գոգցես ազինս 'ի սկզբան մատե-դպրութեան նոցա՝ ռապսոդային երգս նկատեմք, յորս նոքա ուշի մտօք զախորժելին, զարժանին յիշատակի և զկրիցն շարժութիւն ամփոփէին։ Ի շարս յոգնատեսակ երգոց ազգայնոց և ռապսոդականն տեսանեմք, յորոց սակի զԻլիականն ունիմ Յունաց, զՄատեանն Թագաւորաց՝ Շահ Նամէ վերաձայնեալ 'ի Պարսից, և զայլս առ այլս։ Ապաքէն և զմերոց հայրենեաց ցանկալի էր մեզ 'ի թիւս սոցին դասել զԵրգ Վիպասանաց՝ սեպհական իմն անուամբ որոշեալ.

սակայն ոչ տուաւ մեզ այդ ուրախութիւն. քանզի սուր և հուղկահարութիւնք թշնամեաց և անդադար պատերազմունք, ոչ միայն զմերայոցն վսեմական մնաց ծնունդ՝ հողմոյ, հրոյ և սահմանաց ջուրց ետուն, այլև ոչ քար թողին 'ի Հայաստան 'ի քարի վերայ։ Թէև երգքս այսորիկ բնաջինջ անհետացան, սակայն հնախօսն մեր՝ բազմահմուտ ծերունին Խորենայ, ոչ անփոյթ արար զնոքօք. այլ զնշխարս նոցուն պահպանեալ աւանդեաց մեզ 'ի Պատմութեան իւրում։ Յոլովադիմի երգոցս այսոցիկ յիշատակութիւն առ Քերթողահօրն տեսանեմք, յորոց վերայ զնահապետաց Հայոց և զՀայկազն թագաւորաց արարս շինէ՝ 'ի նախնոյն Հայկայ սկսեալ (2107 ամօք նախ քան զՔրիստոս) մինչև ցվերջին հայկազունն Վահէ (328 ամօք նախ քան զՔրիստոս). և աստի մինչև ցժամանակս Խոսրովու, որդւոյ Վաղարշայ (ամ տեառն 214), ուր և սպառի այդ աղբիւր կենդանի ջուրց՝ յընթացս յոլով դարուց ըղմիտս և զսիրտ նախնեաց մերոց զովացուցանողաց։ 'Ի սոցունց էր՝ որ 'ի կարգ հնագոյն աւանդութեանց էին անցեալ յաւուրս Վաղարշակայ (147 ամօք նախ քան զՔրիստոս), և էր՝ որ կենդանի էին 'ի շրթունս ազգիս մինչև ցսկիզբն վեցերորդ դարու, որում նոյն ինքն Խորենացին վկայէ։ Եւ ոչ էին սոքա անոյշ և անշուք երգք, որպէս կամ եղև ումանց յօտարազգի գիտնոց ասել (3). այլ հրաշա-

(3) Eugène Boré, l'Arménie.

կերտ յօրինուածք և ծնունդ վսեմախոհ մտաց և բազմածաղիկն երևակայութեան որդւոց Հայաստանի։ Երգքս այսոքիկ, զորս Խորենացի Երգ վիպասանաց կոչէ, ՚ի հնումն առ մեզ՝ որպէս և առ բազումս ՚ի հնագոյն ազգաց Ասիոյ և Եւրոպիոյ, զտեղի պատմութեան ունէին։ Եւ այս ոչ եթէ կարծիք նորոց ոմանց բանասիրաց են, այլ նաև արտաքին իմաստասիրաց, և զմերն ասասցուք՝ Մար Աբասայ և փիլիսոփային (4) Խորենացւոյ։ «Քանզի սա յառաջին գիրս Պատմութեան իւրոյ զյաղթութեանց և զտիրապետութեան Արամայ ճառելով՝ զբանս հնախօս Ասորւոյն ՚ի մէջ մուծանէ, որ զայս յինքեան պարունակէին արժանի մտադիր քննութեան զյիշատակութիւն. »Բայց թէև ոչ ՚ի բուն մատեանս (այսինքն թագաւորաց կամ մեհենից) յիշատակեցան՝ որպէս Մար Աբաս Կատինայ պատմէ, ՚ի փոքունց ոմանց և յաննշանից արանց ՚ի գուսանականէն այս (այսինքն՝ պատմութիւն քաջութեանց և տիրապետութեան Արամայ) գտանէ ժողովեալ ՚ի դիւանէ արքունեաց (5)։« Սոքին իսկ աննշան արք և փոքունք ոմանք էին արդարև, որք յամենայն դարս և առ ամենայն ազինս զգործս քաջաց երգելով՝ անմահացուցին զայնս վասն յետագայից ՚ի պարծանս ազգի իւրեանց։ Եւ երևի՝ թէև աննշանք, այլ ոչ միանգամայն անկածք. քանզի ՚ի դիւան արքունի ժողովեցան և նիւթ եղեն իմաստ-

(4) Ապրեալ [illegible] դար առաջ Փրկչին։
(5) Խորեն. Գիրք Ա. Գլ. ԺԴ։

նոց զյիշատակ ազգաց, ազանց և Թագաւորաց յաւերժացուցանել, որպէս և մերոյս իսկ Նշանայ։ Ոչ եթէ յառեսցուք զուշ մտաց մերոց յայն մասն քաղդէացի մատենին, զոր բերեալ տեսանեմք առ Խորենացւոյ (6), յորում և գործք մերոց նախահարց պատմին, և 'ի նմին ոչ այլ ինչ բայց եթէ զերգս նախնեաց վիպասանաց գտցուք։ Մի՞ խորթ երևեսցի զոր ասեմքս՝ ընթերցողաց մերոց. քանզի այսու ոչ թեթևացուցանել կամիմք զյարգ հնագոյն պատմութեան ազգիս և ոչ խախտել զճշմարտաբանութիւն Քերթողահօրն. քաւ և մի՛ լիցի. այլ նոր և առատափայլ շող ինչ կաթեցուցանել կամիմք յայս նախնական մասն Պատմութեան մերոյ, զորով մինչ ցարդ զանց արարին թէ՛ հայ և թէ՛ օտարազգի հեղինակք Պատմութեան Գրականութեանս։

Արդարև՝ որպէս ասացաք, պատմութիւն մեր 'ի Հայկայ սկսեալ մինչև ցԽոսրով առ Խորենացւոյ մեծաւ մասամբ հիմնեալ երևի 'ի վերայ երգոց վիպասանաց, որ և ակնյանդիման հանդիսանայ մտադիր քննողաց։

Նախ առաջին՝ վերոյիշեալ Քաղդէացի մատենանն՝ 'ի Մար Աբասայ 'ի Նինուէ գտեալ, ինքնին վկայէ բանից մերոց։ Ոչ եթէ արդարև աներկբայաբար էին հարքն մեր՝ ըստ ասից Խորենացւոյ, որոց և չեղև բնաւ փոյթ զյիշատակութիւն անցելոց գրով աւանդել, ուստի՞ ապա առեալ հեղինակ յիշեալ քաղդէա-

---

(6) Նոյն. Գիրք Ա. Գլ. Թ։

ցի մնատենին և զմերոցս պատմութիւն, շարէ 'ի կարգըս բանից հնոց և նախնեցոյ· յայտ է եթէ յերգոց վիպասանաց։ Նա այսմ Մ՚ար Ա՚բաս ինքնին վկայէ 'ի Ճառելն զԱ՚րամայ· զայս 'ի փոքունց ումանց և յաննշանից արանց 'ի գուսանականնէն գաւառի ժողովեալ 'ի դիւանի արքունեաց։« Եթէ յարքունի դիւանս Ա՚րնուէի ժողովեալ պահպանէին երգք զԱ՚րամայ՝ և այն 'ի փոքունց և յաննշանից առացեալք, զինչ ապա զնախնականն ժամանակաց, զՀայկայ և զնորին գործոց երգչաց՝ գուցէ և ականատեսաց, իմաստասիրեսցուք։

Երկրորդ՝ ընթերցեալ ուշի ուշով զոր քաղեալ 'ի Քաղդէացի գրոց՝ մեզ աւանդէ Խորենացին, սքանչանամք ընդ ոճ՝ միանգամայն և ընդ կենդանագիր ոգին, զոր մնանասանէ 'ի քանի մի հատուածս նկատեմք։ Ա՚զգային ոգւոյ ևեթ է գործ այնպէս երգել զսխրագործութիւնս հսկայատիպ նախահարց մերոց, որպէս 'ի Խորենացւոյ յառաջբերեալ 'ի հատուածս երգեալ տեսանեմք· յորոց կարգի են ա՟· Ակնարկէր Հայկայ (7), բ՟· Ակնարկէր պատերազմին Նորա ընդ Բէլայ (8) և գ՟· Վկայութիւն քաջութեանց Ա՚րամայ (9)։

'Ի քննել առեալ զերեսին հատուածսդ՝ տեսցուք 'ի նոսին ա՟· զի եթէ Քաղդէացի կամ այլազգի ոմն լինէր հեղինակ վիպասանութեանն, ապաքէն ոչ այդպիսի ինն սքանչանօք պատմէր զապստամբութիւն Հայ-

---

(7) Խորէն· Գիրք ա՟· Գլ· Ժ՟։

(8) Նոյն· Գլ· ԺԱ՟։

(9) Նոյն· Գլ· ԺԳ՟ և ԺԴ՟։

կայ՝ 'ի մոռացօնս արկեալ բնաւին զԲէլ։ Բ. զի նկարագիր նորին իսկ Հայկայ, զոր վիպասանն՝ գեղապարզամ, անձնեայ, թաղագանգուր, խայտակն, հաստաբազուկ կոչէ, ոչ այլ ոք բաց 'ի սերնդոց Հայկայ՝ պարծանօք 'ի յուշ բերողաց զարարս նախնւոյն իւրեանց, կարէր այդպիսի յափշտակութեամբ մտաց պատկերացուցանել։ Գ. զի նկարագիր պատերազմին Բէլայ այնքան զեղուն է մանրապատում հանգամանօք, որ և ամենեքին գոգցես առ Հայկ վերաբերին, մինչ անհընար լինի մտադիր ընթերցողին չնկատել 'ի նոսին հետս երևակայութեան վիպասանին, և այն՝ Հայ վիպասանին։ Դ. զի եթէ զննել կամեսցուք զոգի վիպասանութեանցդ, տեսցուք և 'ի նմին զազգային մեր յատկութիւնս, զորս իմանալ կարէր երգիչն Հայ և ոչ օտարոտի ոք։ Յաւել առ այս և զպատճառ ապըստամբութեան Հայկայ՝ այն է, անհնազանդութիւն (10), զոր և մատնանիշ ցուցանեն ականաւոր մատենագիրք ազգիս (11)։ 'Ի բանս իսկ պատգամաւորին Բէլայ զմերս տեսանեմք բնաւորութիւն ճշդիւ գծագրեալ. քանզի ասէ՝ »Բնակեցեր 'ի մէջ ցրտութեան սառնամանեաց, այլ ջեռուցեալ մեղմեա՛ զխստութիւն ամբար-

---

(10) Նոյն. Գիրք Ա. Գլ. Ժ։

(11) Գրիգոր Մագիստրոս 'ի Թղթի իւրում առ Պետրոս Սլաւ. ասէ. »Բնակիչք Արմենի օրէն հպարտութեան և անհնազանդ ընութեան և խրոխտաբարոյ էարս՝ ոչ օտարաձայն յայսոսիկ ընութեանս յարափոխական հաստել։«— Տե՛ս դարձեալ Խորեն. Գիրք Բ. Գլ. ԼԲ։

ջեալ ֆօ հղարփայեալ Եարուսցք, և հնազանդեալ ինձ՝ կեաց 'ի հանդարտութեան, ուր հաճոյ է քեզ յերկրիս իմում բնակութեան (12):«

Իսկ պատմութիւն Արամայ մուծեալ է 'ի մատեանն «Քաղդէացի՝ առեալ գլխովին յազգային երգոց՝ ժողովելոց յարքունի դիւանի Նինուէի: Բաց 'ի վկայութենէ Մար Աբասայ՝ նաև բանք երգչացն զհայութիւն նոցին նշանակեն. քանզի շրթունք որդւոց հայրենեաց ևեթ հնչեցուցանել մարթեն զթագաւորէ իւրեանց՝ զոր 'ի Քաղդէացի մատենին ամփոփի. »Սա (Արամ) այր աշխատասէր և հայրենասէր եղեալ՝ լաւ համարէր զմեռանելն 'ի վերայ հայրենեացն, քան թէ տեսանել զորդիս օտարածնաց կոխելով զսահմանս հայրենիս, և հարազատից արեան նորա՝ տիրել արանց օտարածնաց (13):«

Ը.

Երգն Վիպասանաց՝ առ Խորենացւոյ յիշատակեալ, թերևս ամբողջ և ընդարձակ բանաստեղծութիւն էր, յորում 'ի հնոցն մերոց աւանդեալ լինէր պատմութիւն Թագաւորաց Հայոց: Մինչև ցսկիզբն վեցերորդ դարու Երգն այն պահպանեալ մնայր 'ի Հայաստան և որպէս յայտնի երևի՝ ծանօթ էր մարդկան ժամանակին. քանզի պատմաբանն մեր յերկս

(12) Խորէն. Գիրք Ա. Գլ. ԺԱ:
(13) Խորէն. Գիրք Ա. Գլ. ԺԳ:

դէպս որոշաբար ցուցանէ զնորին գոյութիւն՝ ասելով. «Օ՛յս մեզ ստուգապէս պատմէ Ուլիւպ . . . որում և Պարսից մատեանք վկայեն և Երգք վիպասանաց (14):» Պատմեալ. «Արտաշիսի վերջնոյ գործք բազում ինչ յայտնի են քեզ 'ի Վիպասանացն, որ պատմին 'ի Գողթան (15):» Եւ յայլում վայրի. «Ա՛յս ամենայն . . . յայտնի են քեզ յԵրգս վիպասանաց (16):» Նոյս ուրեմն բաց 'ի վկայութենէ Քաղդէական մատենին, ուստի հանեալ էր Մար Աբասայ զնախկին պատմութիւն ազգիս, և որոշակի այս յիշատակութիւն մատենագրին մերոյ զլինելութիւն ազգային պատմական երգոց ակնյանդիման ցուցանէ։

Նմանողութիւն, ընդարձակութիւն և բազմամասնութիւն Երգոյն թէև յառաջասացելովքս անշուշտ ապացուցանի. սակայն յառաւել հաստատութիւն կարծեացս՝ բերցուք հատուած մի 'ի գրոց Խորենացւոյ, որ միանգամայն 'ի բաց փարատել ունի զամենայն տարակուսանս ըստ այսմ մասին։ Օ՛կնի հաղորդելոյ մեզ զնկարագիր բնակութեան Մարացի գերեանցն՝ ածելոց 'ի Հայս առ Տիգրանաւ, յաւելու Քերթողահայրն. «Ցայտնեն զայս Ճշմարտապէս և Թուելեացն երգք, զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինաւէտ գաւառին Գողթան. յորս շարին բանք Երգոցն զԱրտաշիսէ և զորդւոց նորա՝ յիշելով այլաբանաբար և զզարմիցն

(14) Խորէն. Գիրք Բ. Գլ. ԽԸ։
(15—16) Նոյն. Գիրք Բ. Գլ. ԽԹ։

Աժդահակայ, վիշապազունս զնոսա կոչելով. զի Աժդահակդ 'ի մեր լեզուս է վիշապ։ — Այլ և ճաշ ասեն գործել Արգաւանայ 'ի պատիւ Արտաշիսի և խարդաւանակ լեալ նմին 'ի տաճարին վիշապաց ([17])։ Այլ և Արտաւազդայ ոչ գտեալ ասեն' քաջի որդւոյն Արտաշիսի, տեղի ապարանից' 'ի հիմնանալն Արտաշատու. նա անց, ասէ, գնաց և շինեաց 'ի մէջ Մարաց զՄարակերտ, որ է 'ի դաշտին, որ անուանեալ կոչի Շարուրայ։ — Այլ տենչայ, ասեն, Սաթենիկ տիկին տենչանս' զարտախուր խաւարտ և զտից խաւարծի 'ի բարձիցն Արգաւանայ ([18])։«

'Ի քնին առեալ զայս հատուած' տեսանեմք 'ի նմին բազում մասունս, պարունակօղս յինքեան զզանազան իրագործութիւնս' պատշաճեալս այլևայլ անձանց և ժամանակաց։

Նախ առաջին' զԱնուշայ և զզաւակաց նորա տեսանին 'ի նմին յիշատակութիւնք (565 ամօք նախ քան զՔրիստոս)։

Երկրորդ անգամ' բանք զԱրգաւանայ Մեդաց-

---

([17]) »Խարդաւանակ լեալ նմին 'ի տաճարին վիշապաց.« զայ-
բան Լը Վայեան եւ Փլորիվալ թարգմանեն »lui dressa des embûches dans *le temple* des dragons.« որ չէ
այդպէս, քանզի Տաճար' Ապարանք նշանակէ. յայս
տեղս պարտ էր առել — dans *le palais* des dragons և
ոչ dans *le temple*. Տե՛ս Գիրք ա. եր. 123 թարգմ.
նորին։

([18]) Խորեն. Գիրք ա. Գլ. Լ։

ւոյ, որոյ 'ի մահ եղեալ դաւել զարքային Հայոց՝ Արտաշէս, ձայն գործէ 'ի պատիւ նորա 'ի տաճա-րին վիշապաց (ամ տեառն 127)։

Երրորդ անգամ՝ զրոյցք զԱրտաւազդայ՝ զորդւոյ նոյն իսկ Արտաշիսի, որոյ ոչ գտեալ տեղի վասն ապարանից իւրոց 'ի հիմնարկելն Արտաշատ քաղա-քի 'ի ձախակողմն Երասխայ, անցեալ գնայ և 'ի մէջ Մարաց՝ յԱյրարատ նահանգի բնակելոց, շի-նէ զՄարակերտ 'ի դաշտին Շարուրայ. որ և եղև այս յամի տեառն 129։

Չորրորդ՝ բանք զՍաթինկանէ՝ կնոջէ Արտաշի-սի, որ յառաջբերեալ տեսանին առ Խորենացւոյ աւանց իրիք փոփոխութեան, որ և բուն խօսք վի-պասանաց երևին լինել, և են այսպէս »Տենչայ Սա-թենիկ տիկին տենչանս, զարտախուր խաւարտ և ըզ-տից խաւարծի 'ի բարձիցն Արգաւանայ։«

Բովանդակութիւն Երգոյս, որոյ առարկայ և նիւթ 'ի պատմութենէ ազգի մերոյ առեալք՝ խառն ընդ գործոց վիշապազանց այսինքն՝ Մարաց, գործելոց 'ի Հայս, 565 ամօք յառաջ քան զՔրիստոս սկսեալ՝ գայ իջանէ մինչև ց129 ամ տեառն, և պարունակէ յինքեան զշրջան ժամանակի իբրև եօթն հարիւր ամաց։ Ըստ հետևեցուցանել կարէ ընթերցողն և զընդարձակութիւն Երգոյն, որում բազմամասն պարտ էր լինել նմա՝ համգոյն պատմական բանաս-տեղծութեանց Արևելեան ազգաց՝ մանաւանդ Պար-սից Մատենին Թագաւորաց։ Վասնզի արդարև պատ-մութիւն անցից՝ յընթացս եօթն դարուց եղելոց 'ի

Հայաստան, ուր ճաղան գործք արուեստեան գտանին գոր-ծեալ, անհնարին իմն էր անփոփել 'ի սակաւամասն և 'ի կցկտուր երգս ինչ։ Նաև եթէ այս այսպէս, տակաւ ուրեմն ոչ միանգամայն հեռի 'ի ճշմարտու-թենէ ցուցցուք զանձինս ասելով, եթէ արդարև ոչ միայն առանձին երգք գոյին առ նախնիս մեր՝ յայլևայլ դէպս ասացեալք, այլ նաև անընդհատ և շարունակաբար վիպասանութիւնք երևելի գործոց, որպէս 'ի բերբեալ հատուածիդ նկատեմք։

Նշխարք էին տեսակք ազգային պատմական երգոց, յորոց ումանք սոսկ երգ Վիպասանաց, իսկ այլք՝ երգ Թուելեաց (19) կոչէին։ Յետինքս այսորիկ՝ որպէս անուանակոչութիւն իսկ նոցին ցուցանէ, թերևս կարգի ժամանակագրութեան հետևէին, այն ինչ առաջինքն երևակայութեան և եթ գնային զհետ։

Զայս որոշումն Երգոյն վիպասանաց յերկուս ազգս Խորենացին ինքնին ցուցանէ։ Իսկ մեք յաւել-ցուք առ այս և զԵրգոց յաղթութեան նորին՝ այն է, աստուածաբանական կամ դիւցաբանական լինելն նորա՝ մնացուածոց 'ի սկզբան անդ· որ և ապացուցանի բա-նիւք Երթողահօրն 'ի համառօտիւ հաղորդելն մեզ 'ի Պատմութեան իւրում զսկիզբն Դիւցազնական Ան-

(19) Ոմանք Թուելեաց բառիս զբեռն կամ զշատ, զշատաբե-րական ընթերցն երգոյ իմաստ կամին. որ չէ այսպէս, քան-զի երգոյ հարկաւ պարզ է շատաբերական ընթեր։ Այլ բառս ոչ այլ ինչ ցուցանէ բայց եթէ զերգ ժամանա-կագրական։

տեսլեան՝ ոգեալ բանաստեղծական ոգւով. «Մ՛ահեղք և երևելիք առաջնոցն 'ի դիւցն, և աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ սկիզբն աշխարհի և բազմամարդութեան։ Նոյ 'ի սոցանէ հատեալ զատան ազգ սկայիցն, անհեղեղք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք, որք յղացեալք ամբարտաւանութեամբ՝ ծնան զամբարիշտ խորհուրդ աշտարակաշինութեան, և 'ի նոյն լինելոյն գործ անկեալք. յոր հողմ ահագին իմն և աստուածային շնչեցեալ 'ի դիւցն ցասմանէ՝ ցրէ զամբարտակն. և մարդկանն անլուր բարբառս իւրաքանչիւր ումեք բաշխեալ, աղմուկ շփոթի 'ի մէջ արկանելոյն։ Յորոց մի էր և յաբեթոսթեանն Հայկ, անուանի և քաջ նախարարն, կորովաձիգ և հաստաղեղն (20)։»

Զերգքս զայսոսիկ՝ որպէս 'ի վեր անդր հարեւանցի ասացաք, առ հնագոյն յօդուածոյն վիպասանութեանց ունել պարտ է, որք 'ի մատեանս և յարքունի դիւանս ևեթ պահպանեալ մնացին և 'ի վերջերորդ դարու ոչ ևս լինելոյն լսելի 'ի շրթունս ազգի մերոյ և երգչացն Գողթան։

Զհնագոյն վիպասանութեանցս զան զկնի այլ ևս բազում մասունք Երգոյն, զորս ոչ աւելորդ համարիմք՝ ըստ տեսութեան մերում, յերկիս ազգս բաժանել։ Ո՛չ առաջինն դասեսցուք զայնոսիկ, յորս վիպասանք զարութիւնս և զգործս մերոց քաջաց, թագաւորաց և զօրավարաց պատմեն. առ Եղիշէրդին՝

---

(20) Խորեն. գիրք ա. գլ. Ժ։

յորս զՄարաց կամ զՊարսից են բանք. իսկ առ Եփրատայն՝ յորս զԱսորեստանեայց աւանդութիւնք տեսանեմք։

Բուռն հարցուք զառաջնոց և ըստ յաջորդութեանց իւրացն եղելոց և զերգսդ զնոցանէ քննեսցուք։

’Ի սոսին զառաջին տեղի ունին վէպք զՏիգրանայ, որ ’ի 565 ամի նախ քան զՔրիստոս յաթոռ թագաւորութեան Հայոց բազմեալ և զդլրացի ազինս նուաճեալ՝ ընդարձակէ զտէրութիւն իւր՝ ընդ ձեւուամբ գրաւելով զնախկին սահմանս մեր։ Եւ ոչ զայս միայն, այլ և զՅոյնս անգամ հարկատուս կացուցանէ, զկնի որոյ բարեկարգութեան աշխարհիս հոգ մեծ տանի։ Գնայ ապա ’ի վերայ Աժդահակայ՝ թագաւորին Մարաց՝ աջակցութեամբ Կիւրոսի. յաղթական հանդիսանայ ’ի մարտին՝ սպանանելով զարքայն Մեդացւոց և զտուն նորա համգերձ բազմութիւ գերեօք խաղացուցեալ առ ստորոտով Մասեաց և առ Երասխ գետով բնակեցուցանէ։

Յառաջքերեալն աստ համառօտութիւն բանից զՏիգրանայ՝ ամենեին տարբերի ’ի Յունական աւանդութենէն, որ յաղագս Կիւրոսի, Աժդահակայ և Տիգրանայ։ Երոդոտոս՝ զհետ գնալով աւանդութեան Պարսից ’ի պատմելն զգործս Կիւրոսի, զայս ինչ յարէ. »Բաջ գիտեմ, եթէ զոն ա՛յլ եւս էրէք լործէք զարքայէս ([21])։« Առաջին կարծիք իւրն է.

---

([21]) Երոդոտոս. Գիրք Ա. Հատ. 95։

երկրորդն Քսենոփոնայ (22). երրորդն Կտեսիա-սայ (23)։ Զէ անծանօթ բանասիրաց մեծագոյնն այն տարաձայնութիւն, որ 'ի բանս երից պատմաբանիցդ, զոր և չէ տեղւոյս մանրամասն քննել։ Ասասցուք միայն, եթէ ոք իմանալ կամեսցի ուղղորդ նորձէք զարքայէն Պարսից` ոչ այլ ուրեք բայց եթէ յա-ւանդութիւնս Հայոց պարտ լինի նմա խնդրել, և այն յերգս վիպասանաց։ Քանզի զոր ինչ սոքա ասե-ին զԿիւրոսէ` մեծաւ մասամբ զանազանի յասից Յոյն մատենագրաց, որոց բանք սաստիկս կռուին ընդ մի-մեանս և չբերեն ամենևին նմանութիւն իրերաց։ Յե-րից հռչակաւոր պատմաբանից Յունաց` Քսենոփոն միայն մինչ յիշէ զպատերազմն Կիւրոսի ընդ Տիգ-րանայ, որ և նուաճեալ յարքայէն Պարսից` հնա-զանդի, դաշնակից և հարկատու կացեալ նմա։ Վի-պասանաց մերոց աւանդութիւն զհակառակն ցուցանէ. յորում զարքայն Հայոց Տիգրան զմի 'ի հզօր տիեզե-րակալաց Ասիոյ տեսանեմք, որ ոչ միայն ոչ յաղ-թի 'ի Կիւրոսէ, այլ դաշնակից ունելով զնա` ըզ-Մարացն խորտակէ զօրութիւն, սպանանէ 'ի մար-տին զԱժդահակ, զորոյ և զտուն հանդերձ գերեօք աւելի քան զբիւր մի` ածեալ բնակեցուցանէ 'ի Հայս։ Հանգամանքս այս յետին` այն է, գաղթն Մարաց յաշխարհ մեր, տայ մեզ իմաստաւորել զճշմարտութիւն և զստուգութիւն աւանդութեան

---

(22) Քսենոփոն. 'ի Պատմութեան Կիւրոսի, Գիրք Բ և Գ։
(23) Կտեսիաս առ Փոտիոս 'ի Նորին Մատենադարանին։

Հայոց, զոր ըստ կարծեաց մերոց նախամեծար դասել պարտ է քան զՅունացն։ Վասնզի դիւրացի և մերձակայ գոլով Պարսից՝ ապաքէն մերոցն էր օրէն ստուգիւ գիտել զպատմութիւն Կիւրոսի և Աժդահակայ, քան թէ Յունաց, յորոց 'ի խօսս չիք և ոչ միաբանութիւն ինչ, որով հնար լինէր զաւանդութիւն վիպասանաց մերոց հերքել։ Զայս խնդիր պատմաբանական այլուր պարտ է լուծանել և ոչ յայսմ վայրի. յոյր սակս դարձցուք 'ի կարգ քննութեանս, և ասասցուք եթէ այսօրինակ սխրագործութեանց թագաւորին Հայոց պարտ էր արդարև զերևակայութիւն ազգիս բորբոքել, որ և եղև իսկ. քանզի ոչ յապաղեցին Երգիչք 'ի վիպասանութիւնս իւրեանց մեծանելով զարութիւնս Տիգրանայ՝ յաւերժացուցանել զայն։ Զբովանդակութիւն երգոցս պատմելով՝ այսպէս 'ի մէջ բերէ Խորենացին զքանի մի խօսս 'ի նոցանէ. »Զայս և որ այլ այսպիսիք քաջութիւնք, եբեր մերոյ աշխարհիս խարտեաշս այս և աղեբեկ ծայրիւ հերաց Երուանդեանս Տիգրան. երեսօք գունեան և մեղուակն, անձնեայն և թիկնաւէտն, առոյգաբարձն և գեղեցկոտն, պարկեշտն 'ի կերակուրս և յըմպելիս և 'ի խրախճանութիւնս օրինաւոր.« զորմէ ասէին 'ի հինսն մեր որք բամբռամբն երգէին, »լինել սմա և 'ի ցանկութիւնս մարմնոյ չափաւոր, մեծիմաստ և պերճաբան և յամենայն որ ինչ մարդկութեան պիտանի... Արդարադատ և հաւասարասէր կշիռս ունելով յամենայնի, զամենայն ուրուք կենցաղ՝ մտացն լծակաւ

կշռէր․ ոչ ընդ լաւագոյնսն խառնդայր և ոչ զնուաստասըն արհամարհէր․ այլ ամենեցուն հաւասարակաց հնարէր զխնամոցն իւրոց ՚ի վերայ տարածել զգեստ (24)։

Կարծես թէ զԻղիականին տեսանեմք առաջի աչաց զնկարագիր հելլենացի դիւցազանցն՝ ՚ի լուր հոմերեան զարմանակերտ քառիցս՝ [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible], որովք վիպասանն զարքայն սիրելի գովաբանէ։

Բաց յայսմանէ նաև հրաշալին այն նկարագրութիւն երազոյն Աժդահակայ առ Խորենացւոյ՝ գործ վիպասանաց թուի լինել, զոր և ընթեռնուլ կարես ՚ի Պատմութեան նորին (25)։

Յորդիս Տիգրանայ քաջանուն հանդիսացաւ Վահագն։ Մարտ եղեալ կռուեցաւ ընդ վիշապաց և մեծամեծ նահատակութիւնս գործեաց ՚ի վերայ երկրի։ Յերկրէ յերկինս անցեալ գողացաւ զյարդ Բարշամայ, զոր և ընդ տանելն՝ անկեալ զճանապարհայն մղեղք յարդի զԿաթինն ծիր յօրինեցին, որ առ մեզ ՚ի տակս այսօրիկ Յարդգողի հետ (26) ասի։ Նախնիք մեր ՚ի շարս աստուածոց դասեցին

---

(24) Խորէն. գիրք ա. գլ. իդ։

(25) Նոյն. գիրք ա. գլ. իղ։

(26) Շիրակ. «Յաղագս կաթին ծրոյ՝ ոմանք յառաջնոց հայոց ասացին, թէ ՚ի խիստ ձմերան Վահագն նախնի հայոց գողացաւ զյարդ Բարշամայ Ասորեստանեայց նախնոյ, զոր և մեք [illegible] բնախօսութեամբ Յարդգողի հետ անուանել։»

զսա, և դրացի Վիրք արձան կանգնեալ նմա՝ զո-հիւք պաշտէին (27)։

Նախագաղափար գոլով քաջութեան, որպէս և նմանիք նորին Հերակլէսք, 'ի պաշտպանութիւն մաղթէին զնա Հայք հաւասարապէս ընդ Արամազ-դայ և ոսկեմօրն Անահտայ (28)։ Այլ չէ սա՝ որպէս կարծիք եղեն ոմանց, նոյն ինքն Հերակլէն Յունաց․ այլ սեպհական, բնիկ և մին 'ի գլխաւոր դից հնոյն Հայաստանի, որ սիրելի էր յոյժ և պաշտելի առ նախնիս մեր։ Ի սակս մեծամեծ քաջութեանց իւրոց առ ազգս և մաքրելոյ զերկիրս 'ի գազանաց՝ Վիշապաքաղ (29) համբաւեցաւ առ կենդանութեամբ իւրով։ Զկնի մահուան մեհեան կառուցին սմա 'ի Տարօն, ուր նորին իսկ որդիք պաշտօնեայ կացին նմին (30)։ Այս մեհեան մեծագահ յաշտից տեղի էր թագաւորաց մերոց և Վահեվահեան անուամբ հռչակեալ (31)։ Թուի ինձ, թէ կին էր սորա՝ ըստ դիւցաբանութեան, Աստղիկ․ քանզի 'ի նմին իսկ 'ի Տարօն գաւառի՝ բաց 'ի մեհենէն ոսկէմօր, ոսկէ-հօր, ոսկէծին (32) դիցն, գոյր և երրորդ մեհեան

(27) Խորէն․ գիրք ա․ գլ․ լա։
(28) Ագաթ․ Վենետիկ, 1835․ եր․ 102։
(29) Նոյն․ եր․ 602--3։
(30) Խորէն․ գիրք բ․ գլ․ ը։
(31) Ագաթ․ եր․ 602։
(32) Մականուանք Անահտայ — Ագաթանգեղոսի։

Աստղկան, զոր սենեակ Վահագնի կոչէին. մեհեանն՝ զոր ես որոնեալն իմանամ ([33]):

Մարտ սորա ընդ վիշապաց, անցք ընդ երկինս, գողանալն զյարդ Բարշամայ ([34]), որ արեգական է Ասորւոց, ապաքէն արեգականատիպ Հայկայ պատկերացուցանել ունէին զսա յերևակայութեան Հայոց. Գոլով սորա բնիկ դիւցազն աշխարհիս՝ քան զբազումս յեկամուտ աստուածոց սիրելի էր յաչս մերոցն, որոց 'ի սէր մեծամեծ գործոց նորա՝ մոռացեալ զմարդկօրէն ծնունդն, զերկին, զերկիր և զծով 'ի ցաւս երկանց կալեալ համբաւէին, և 'ի բոցոյ իբրև յանօսր և 'ի մեքենայագոյն սաւրէ ծնանել ասէին մանկանս: Այլ սակս և առն հրաշալւոյ ծննդեան հրաշալի 'ի վիպասանաց կերծեալ այսպէս քարոզիւր.

»Երկնէր երկին և երկիր.
Երկնէր և ծիրանի ծով.
Երկն 'ի ծովուն ունէր
Զկարմրիկն եղեգնիկն.
Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր.
Ընդ եղեգան փող բոց ելանէր.
Եւ 'ի բոցոյն պատանեկիկ
Վազէր. նա հուր հեր ունէր.
Ապա թէ բոց ունէր մօրուս,
Աչկունքն էին արեգակունք:«

([33]) Ագաթ. եր. 602:

([34]) Բար Շէմշէ 'ի լեզու Ասորւոց Որդի արեգական նշանակէ:

»Զայս երգելով սմանց բանիւքն՝ լուաք իսկ ականջօք մերովք (35)« յաւելու Խորենացին։

Այսինքն հարիւր յիսուն ամօք նախ քան զՔրիս-տոս յաթոռ Թագաւորութեան բազմեցաւ Վաղար-շակ, զնորին կարգաւորելոյ զաշխարհս նորանոր կանո-նադրութեամբք՝ զորս մի ՚ի նահապետութեանց և նախարարութեանց նշանակեաց, իւրաքանչիւրոցն ճշդիւ սահմանելով զպաշտօն։ ՚Ի սոցին կարգէ էր և Թոռն Հայկական՝ Տորք անուն, այր խոժոռադէմ, բարձր, կոպտարանձն, տափակքիթ և դժնահայեաց, զոր կու-սակալ Արևմտից հաստատեաց՝ զանուն ազգին Ան-գեղ տուն կոչելով։ ՚Ի լուր սաստիկ ուժեղութեան և ՚ի տես սոսկալի կերպարանաց տարապայման մարմնոյ նորա՝ բորբոքեցաւ երևակայութիւն վիպասանաց աշխար-հիս Հայոց, որք և ախորժեցան յերգս իւրեանց ըն-դ նորին գործոց նկարագիր պատկերացուցանել։ »Բան-զի՝ ըստ Խորենացւոյ, երգէին նմա բռուռն հարկա-նել զորձաքար վիմաց ձեռօք, ուր ոչ գոյր գեղու-թիւն, և ճեղքել ըստ կամաց մեծ և փոքր, և քե-րել եղնգամբք և կազմել որպէս տախտակ, և գրել նոյնպէս եղնգամբք իւրովք արծուիս և այլս այս-պիսիս (36)։« Յիրաւի է սքանչանալն ծերունւոյն Խո-րենայ ՚ի լուր բանիցս, յորս արդարև Տորք անցա-նէ զանցանէ ուժեղութեամբ և՛ զՀերակլեաւ և՛ զՍամփսոնիւ և զՄիլոնաւ։ Այլ զի չէ այս մուրա-

---

(35) Խորէն. Գիրք Բ. Գլ. Ը։

(36) Նոյն. անդ։

ցածոյ, կցկտուր աւանդութիւն ինչ՝ 'ի փոխ առեալ 'ի դրացի ազգաց և կամ յօտարէն մուծեալ 'ի մեր աշխարհ՝ յայտ է 'ի Ճշդութենէ անտի հանգամանաց նկարագրութեանն, յորս զմերս տեսանեմք Հայաստան լեռնային՝ հայրենիք արծուեաց, զորս և Տորք ըղընգամբք գրէր յորձաքար 'ի վէմն նորին։

Բայց որ առաւել զարմացման է արժանի՝ միւս երգն է վիպասանաց, որ ասէ, թէ «Յեզերս ծովուն Պոնտոսի դիպեալ նաւաց Թշնամեաց՝ դիմէ 'ի վերայ. և 'ի խաղալն նոցա 'ի խորն իբրև ասպարեզս ութ՝ և սա ոչ ժամանեաց նոցա. առնու վէմն բլրաձև և ձգէ զկնի. և 'ի սաստիկ պատառմանէ ջուրցն՝ ընկղմին նաւք ոչ սակաւք. և ամբարձումն ալեացն, որ 'ի պատառմանէ ջուրցն՝ վարէ զմնացեալ նաւսն բազում մղոնս (37)։«

Եթէ չէին զՏորքայ ասացեալ բանքս, որ յաւուրս Աղարշակայ եկաց ըստ պատմութեանին, այն է՝ հարիւր յիսուն ամօք և եթ նախ քան զՔրիստոս, ոչ դանդաղէի ապաքէն Հոմերին Կիկղոպայ Պոլիփեմեայ, զոր Ուդիսսն կուրացոյց, նախահայր նախատիպ զհսկայազն Տորք քարոզել։ Քանզի ամենևին համաձայն են պատմելոցն յՈդիսականին ոչ միայն արարք սորա, այլև նոյն իսկ ծովն և ժայռքն մեծամեծք, զորս երկոքին հսկայքն ձգեն՝ Հայն զկնի նաւացն Թշնամեաց, վիրագն Հոմերի զկնի նաւուն անձին Թշնամւոյ։ Ու եթէ յաւելցես առ այս և զնկա-

---

(37) Խորեն. Գիրք Ա. Գլ. Լ։

լագրութիւն տեղեաց բնակութեան Պոլիփեմեայ՝ զլեռնային վայրս, զխաշնարած լինելն նորա, հուսկ ուրեմն և զնորին ուժեղութիւն և վիթխարութիւն սոսկալի, գուցէ ոչ վրիպիցիս յասելդ զտեղեաց Հայաստան, և զՊոլիփեմեայ՝ Տորք գոլ: Յընթեռնուլն մեր յՈդիսականին զյետագայ տողս՝ թուի լսել զբանս վիպասանաց մերոց նախնեաց. քանզի ասէ Հոմեր.

»Նաւեալ վերագին. 'ի բաց ցամաքն անդ զարթուանն անարէ
Կորդէաց ղեկերին, որք առ նաւուն փառ 'ի շէկէն վայրէկ Գ.
Ճնայոռն բռնէեաց, ծով դեղջայու, յորչափ ալեաց տարչ առէն,
Ծովուն ալէնով վարեր ըղնաան և Տոփ չրգէր ցամաքէն...«

Նաև զի խորամանկն Ոդիսս ոչ դադարեր 'ի կծելոյ զՀսկայն բանիւք՝ թէև 'ի տագնապի էր, յոյր սակս Պոլիփեմ

....Տոլէաւ՝ առ Բրատագամ վէմ առաէլ ահագէն՝
Բարձանաէեաց, ըած էփ ուժոյն յողթաբարոց նորովէն.
Լարէ յեփ նաւուն նշէա 'ի խէլ գոգյէ 'ի ծայրըն շէկէն,
Ծովուն 'ի վիմէն ծփէալ ըղնաան 'ի նոյն վարէր ցամաքէն (38):«

Բայց որպէս և իցէ՝ այս երգ Տորքայ թուի ինձ յօրինեալ ոչ 'ի ժամանակս Վաղարշակայ, այլ 'ի

(38) Ոդիսական, թարգմ. Թոմաճանէ, Վենետիկ, տան ա. Հագներգ. Թ. եր. 264—66.

նախնի դարու 'ի պատիւ Հայկազն Հսկայի ուրուամն, զոր զկնի 'ի համար Տորքայ յարմարեցին Անգեղեայ։ Վասնզի և' ոճ երգոյն և' նոյն իսկ աւանդութիւնն 'ի հնութիւն նորին տան մեզ ակնարկել։ Սակայն լուծումն կարծեացս ոչ այլ ինչ բայց եթէ 'ի ձեռն մնացիր հետազօտութեան հնագոյն գրչագիր մատենից, գուցէ ընդ փոշւով ծածկելոց յանկեան ուրեք Հայաստան աշխարհի, վճարեսցի։

Այլ մեք յառաջ մղեսցուք զհետազօտութիւն մեր և յառեսցուք զաւշ մնաց մերոյ 'ի հատուածս երգոցս այսոցիկ, որոց շարունակութիւն պայուհեան ակներև հանդիսանայ 'ի Պատմութեան քերթողահօրն։ Վասնզի զկնի մահուան Արտաւանդայ, (որոյ ծնունդ և մնունդ նոյնպէս 'ի գրուցոյ (39) առեալ թուի առ Խորենացւոյ), Ամբաստ զկնի ամբաստանեալ յաթոռ թագաւորութեան զԱրտաշէս, զհետ լինի Արտաւազդ՝ եղբօր Արտաւանդայ, 'ի Բագարան եղելոյ, զոր և կալեալ գետասոյզ կորուսանէ։ Ծառայս սորա անձինս իբրև հինգ հարիւր, զորս պարգևէ նմա արքայ, բնակեցուցանէ 'ի Թիկանց Մասեաց․ իսկ ըզգանձս նորա հրամանաւ Արտաշիսի տարեալ 'ի Պարսըս՝ Պարեհի ընծայէ (40)։ Զկնի այսորիկ հրամանաւ արքայի երթայ յԱլանս յօգնութիւն եղբօր Սաթինկան, զոր յետ մահուան հօր նորա՝ այլ ոմն բռնացեալ հալածէր։ Հալածական արարեալ զբռնա-

(39) Խորէն․ Գիրք Բ․ Գլ․ ԼԷ։
(40) Նոյն․ Գիրք Բ․ Գլ․ ԽԸ։

ւորին՝ դարձուցանէ Սմբատ եղբօր Սամթինկան զիշխանութիւն. զերկիր թշնամեացն աւերէ և զնոսին ինքեանս 'ի գերութիւն ածեալ յԱրտաշատ բնակեցուցանէ 'ի Շաւարշական գաւառի։ Յերգս վիպասանոց երգեալ անուանին այսոքիկ գործք մեծի զօրավարին Հայոց, որ սիրելի էր յաչս ազգի մերոյ, որոյ և գեղեցիկ նկարագիր անձին յերգոց անտի առեալ՝ 'ի մէջ բերէ Խորենացին այսպէս. «Սմբէր սա հասակ անդամոց համեմատ քաջութեանն. և առաքինութեանն ոգւոցն ուղղորդ. և գեղեցկութեան աչեօք փայլեցեալ. սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն՝ որպէս դրանկանտիկան 'ի վերայ ոսկւոյ և 'ի մէջ մարգարտոյ ծաղէր. և 'ի վերայ շոյտ անձին և մարմնոյ՝ զգոյշ յամենայնի. և առուչութիւն յաջողուածոց ունէր 'ի մարտս առաւել քան զամենայն ոք (41)։»

'Ի նոյն իսկ յերգս Ծուելեաց զոյգ ընդ քաջութեանց զօրավարին և զգործս Արտաշիսի հուչակեն։ «Քանզի պատմէին զնմանէ շինել զքաղաքն Արտաշատ, կանգնել 'ի նմա մեհեան, բերել 'ի Բագարանէ զհայրենի կուռս (42), զկնի որոյ և զյարձակումն Ալանաց յաշխարհս մեր, պատերազմն ընդ նոցա, տեղի տալն Ալանաց առաջի զօրաց մերոց, անցանելն ընդ Կուր և բնակիլն յայնկոյս գետոյն։

Այլ մեք բերցուք աստ զբանս Խորենացւոյ, որոյ

---

(41) Խորեն. Գիրք Բ. Գլ. ԾԲ։

(42) Խորեն. Գիրք Բ. Գլ. ԽԹ։

քաղեալ յերգս վիպասանաց՝ այսպէս պատմէ զիրացն եղելոց. »Որդի Ալանաց արքային ձերբակալ առնեալ զօրացն Հայոց՝ ածեն առ Արտաշէս. զխաղաղութիւն խնդրէր արքայն Ալանաց՝ տալ Արտաշիսի զինչ և խնդրեսցէ. և երդմունս և դաշինս ասէր հաստատել մշտնջենաւորս, որպէս զի մի՛ ևս մանկունք Ալանաց ասպատակաւ հինից ելցեն յաշխարհն Հայոց։ Եւ 'ի չառնուլ յանձն Արտաշիսի առ 'ի տալ զպատանին, գայ քոյր պատանւոյն յափն գետոյն 'ի դարաւանդ մի մեծ, և 'ի ձեռն թարգմանչաց ձայնէ 'ի բանակն Արտաշիսի. »Քեզ ասեմ, այր քաջ Արտաշէս, որ յաղթեցեր քաջ ազգին Ալանաց, եկ հաւանեաց աչագեղոյ դստերս Ալանաց՝ տալ զպատանիդ. զի վասն միոյ քինու ոչ է օրէն դիւցազանց զայլոց դիւցազանց զարմից բառնալ ըզկենդանութիւն, կամ ծառայեցուցանելով և 'ի ստրկաց կարգի պահել, և թշնամութիւն յաւիտենականս 'ի մէջ երկոցունց ազգաց քաջաց հաստատել։«

»Եւ լուեալ Արտաշիսի զայսպիսի իմաստուն բանս՝ գնաց յեզր գետոյն. և տեսեալ զկոյսն գեղեցիկ և լուեալ 'ի նմանէ բանս իմաստութեան, ցանկացաւ կուսին։ Եւ կոչեցեալ զդայեակն իւր Սմբատ՝ յայտնէ նմա զկամս սրտի իւրոյ՝ առնուլ զօրիորդն 'ի կնութիւն իւր, և դաշինս և ուխտս հաստատել ընդ ազգի քաջացն և զպատանին արձակել 'ի խաղաղութիւն։

»Եւ ասէ արքայն Ալանաց.« Եւ ուստի՞ տացէ

քաջն Արտաշէս հազարս 'ի հազարաց և բիւրս 'ի բիւրոց ընդ քաջազգոյ կոյս օրիորդիս Ալանաց։«

Յաւելու Խորենացին՝ որպէս սովոր է նա առնել 'ի բերելն զբանս երգչաց, թէ »զայս տեղի առասպելաբանելով վիպասանքն յերգելն իւրեանց ասեն·

»Հեծաւ արի արքայն Արտաշէս
'Ի սեաւըն գեղեցիկ·
Եւ հանեալ զոսկէօղ
Շիկափոկ պարանն·
Եւ անցեալ որպէս զարծուի
Սըրաթեւ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ
Շիկափոկ պարանն՝
Ընկէց 'ի մէջք
Օրիորդին Ալանաց·
Եւ շատ ցաւեցոյց
Զմէջք փափուկ օրիորդին՝
Արագ հասուցեալ
'Ի բանակըն իւր։«

»Որոյնպէս զհարսանեացն առասպելեալ երգէին·

«Տեղ ոսկի տեղայր 'ի փեսայութեան Արտաշէսի·
Տեղայր մարգարիտ 'ի հարսնութեան Սաթենկան։«

»Քանզի՝ 'ի վերայ բերէ Խորենացին, սովորութիւն իսկ էր թագաւորացն մերոց՝ փեսայութեամբ

՚ի դուռն տաճարին հասանել՝ դահեկանս ճապաղել ի բերն զհիւպատեանն Հռովմայեցւոց. տապէս և Թագուհեացն յառագաստին՝ մարգարիտ (43)։«

Թէ և ոսկէ և Տորգորէփ կոխելով եմուտ Սաթենիկ ՚ի տաճար Արտաշիսի և եղև առաջին ՚ի կանայս նորա, այլ որպէս ՚ի բանից վիպասանաց երևի՝ ոչ անխռով վայելեաց զիւր զբարեբաստիկ կեանս։ Վասնզի բորբոքեցաւ ՚ի սէր Արգաւանայ՝ գուցէ և վիշապազանց իսկ (44)։ Թերևս ՚ի սակս այսորիկ և մարտ խռովութեան յարուցեալ ընդդէմ սորա Արտաշիսի՝ խորտակեաց զզօրութիւն նահապետին ազգին Մուրացան՝ ջքաջին և իշխողին յոգնաթիւ տիգաւորաց (45),« յորմէ ՚ի սկզբան անդ մեծապէս կասկածէր արքայն Հայոց, մինչդեռ նա զկողմն ունէր

(43) Խորէն. Գիրք Բ. Գլ. Ծ։ — Այս սովորութեան մինչ ցարդ պահպանեալ գտանի ՚ի մէջ Հայոց, ՚ի Նորն Ջուղայ եղելոց։ Վասնզի առ սոսա ՚ի վերադառնալ անդ փեսային յեկեղեցւոյ ՚ի տուն ընդ հարսին, եթէ մեծատուն իցէ, ՚ի սեամս դրան ընդառաջ ելանեն երկուք յազգականաց նոցա՝ ունելով ՚ի ձեռին սկուտեղս երկուս լի դրամով, զորս և յերկուց կողմանց ցանեն՝ մին զգլխով փեսային, իսկ միւսն՝ զգլխով հարսին։

(44) «Այս Արգամ է՝ ասէ Խորէն. որ յառաջասացեալն Արգամեան անուանի։« Գիրք Բ. Գլ. Ծա։

(45) «Սենեակն հանգանակէին ՚ի Մուրացանեան Արգամայ, զի այր քաջ էր և բազմաց տէր տեղաւորաց։« Գիրք Բ. Գլ. ԽԶ։

Երուանդայ։ Այս Արգաւան զերկրորդական ունէր զգահ յաշխարհիս մերում, և ընկալեալ էր յար-քայէն՝ պսակ յոքնակնեակ, գինդ յերկոսին յունկանսն, կար-միր մուճակ միոյ ոտին, պատգամաւ ուտել և պատառաքաղ և [illegible] ըմպելոյ ոսկեղէն նաւագօք (46)։ Նոյնպէս ահա տրփանք Մաթինկան եղեն պատճառք թերևս ան-պայազատ առնելոյ զարմին Արգամայ (47). քանզի որպէս երգէին վիպասանք, հրաւիրեցաւ յաւուր միում Արտաշէս ’ի ճաշ յԱրգաւանայ հանդերձ որդւովք իւրովք. որոց կասկածելով եթէ դաւել խորհեցաւ տանուտէրն ազգին Մուրացան՝ ապշոյ յարուցին և անդէն ’ի հացին իսկ զայլսն Արգա-մայ քարշեցին։ Ուստի եղեալ արքայի յոգի խռո-վեալ՝ դառնայ յԱրտաշատ, և զՄաժան՝ զորդի իւր մեծաւ զօրութեամբ առաքէ ընդդէմ ազգին Մուրացան՝ պատուիրելով զբազումս ’ի նոցանէ սպա-նանել և զապարանս Արգամայ ’ի հուր այրել (48)։

Նոյնպէս նկուն արարեալ զզօրութիւն Մարաց՝ առ ստորոտով Մասեաց բնակելոց, զուոզացն Արտաշէս և ոչ ևս կամեցաւ հարկել Հռովմա-յեցւոց։ Սմին իրի և Դոմետիանոս կայսր՝ զօրաժողով լեալ ընդդէմ նորա՝ գայ ’ի Հայս, ուր ’ի հովտին Բասենոյ հանդիպեալ միմեանց երկոցունց զօրաց, յաղթական հանդիսանայ կողմն Հայոց։ ’Ի սմին պա-տերազմի արիութեամբ քաջացաւ Սմբատ, որ թէ և

---

(46) Խորէն. գիրք Բ. գլ. խէ։

(47—48) Նոյն. գիրք Բ. գլ. ծա։

»ծերագոյն էր, աստ Խորենացին, այլ երիտասարդապէս յարդարեաց և մխեաց զՃակատն ([49])։« Համգոյն այլոց մեծամեծ գործոց և այս յաղթութիւն զօրաց մերոց եանց յերգս վիպասանաց, որք՝ ըստ նորին իսկ Խորենացւոյ, զայս կամելով երգել յառասպելն՝ Դոմետ զոմն ասեն եկեալ ([50]), որ է ինքն կայսրն Դոմետիանոս· ոչ եկեալ այսր, այլ զհրամանն նորա և զզօրս այլաբանելով՝ յանուն նորա կոչեն։«

Բազում այլ ևս մեծամեծ գործս գործեալ պատմի 'ի սմանէ 'ի մասին բարեկարգութեան, յորս թուի ինձ նոյնպէս լսել զոգի նախնի երգչաց (թէև առանց յիշատակութեան անցանէ պատմաբանն զնոքօք), մանաւանդ 'ի ծ̃ղ և 'ի ծ̃թ գլուխն, զորս ուշադիր քննութեամբ ընթեռնուլ հրաւիրի ընթերցողն։

Սմա յաջորդեաց Արտաւազդ՝ առաջին յորդիս Արտաշիսի, այր խռովարար, անձնահաճ, խանդացող· որոյ կասկած 'ի սիրտ արքայի արկեալ՝ ընկենուլ ետ 'ի պատւոյ զտէրն Մուրացան՝ զԱրգամ, և ընկալաւ զգահ երկրորդականն։ Ոչ շատացեալ այսու՝ նախանձեցաւ և ընդ մեծ սպարապետն Սմբատ, որ զկնի բազմեցուցանելոյ զարքայն Պարսից Արտաշէս յաթոռ թագաւորութեան, նուաճելոյ զերկիրն Կասբից և ածելոյ անտի 'ի Հայս զբազմութիւն գե-

(49) Նոյն. Գիրք Բ̃. Գլ. Ծ̃Գ։

(50) Նոյն Գիրք և Գլուխ։

րեաց՝ մեծաւ պատուով ընկալեալ եղեւ յարքայէն։ Յոյր սակս սպանանել խորհեցաւ զզօրավարն Հայոց նախանձայոյզն Արտաւազդ։ Զայս իմացեալ Սմբատայ գնայ բնակել զկողմամբք Ասորեստանի՝ թողեալ զիշխանութիւն զօրաց Հայոց, զոր արքայորդին յինքն առնուլ ոչ կարացէ։ Նոյն սմա յորս եղանել յաւուր միում զկողմամբք Մասեաց. եւ այնինչ յանդուգն արշաւեցուցանէր զերիվար իւր՝ անկաւ 'ի վիհ իմն եւ անհետացաւ զկնի երկեամ մի թագաւորելոյ։

Սորա բնաւորութիւն անսանձ եւ մոլութիւն վարուց եւ անչափ փառասիրութիւն անցին յերգս վիպասանաց, որոց 'ի զարմանս կրթեալ ընդ չարասիրութիւն Արտաւազդայ՝ ոչ մարդ, այլ դեւ կարծեցին զնա գոլ։ «Քանզի զծնողէնէ սորա աւանդութիւն էր զարմանցման արժանիս պատմել գործս, կախարդեալ ասելով զսա 'ի կանանց զարմիցն Աժդահակայ, զոր երգիչք յերգս իւրեանց այլաբանելով »վիշապազունք՝ ասէին, գողացեալ զմանուկն Արտաւազդ եւ դեւ փոխանակ եդեալ (31)։« Նա արդարեւ զի եղեւ սա 'ի տան հօր իւրոյ, խռովութիւն յարուցանելով ընդ ամենայն աշխարհս մեր՝ դրդելով զարքայ ընդդէմ նախարարացն մեծամեծաց, որք նախ քան զնա՝ զհայրենեաց ունելով առաջի զօգուտ, միակամ միահաւան զփառք տանս Հայոց գոյն գործէին ձոխացուցանել։ Հրապուրեալ զհայր իւր՝ Արտա-

(31) Խորէն. Գիրք Բ. Գլ. կա։

չէս , բառնալ եւ 'ի կենաց զծերունին Արգամ: Հալածական արար զՄժդատ. կոտորեալ բաժանել եւ արքայի զսպարապետական իշխանութիւն զօրավարին Հայոց 'ի մէջ իւր եւ եղբարց իւրոց. եւ այսպէս զփառաւորն զայն Թագաւորութիւն Արտաշիսի , որ 'ի մեծամեծ յաղթութիւնս անցանէր՝ անշքացոյց պարտութեամբ , որով պարտեցաւ Հայաստան 'ի Տրայիանոսէ 'ի վերջին աւուրս սորա: Այլ զինչ զարմանք, եթէ 'ի մահուան Արտաշիսի ժողովուրդն՝ տեսանելով զկորուստ իւր մեծ , բահամարէր 'ի գերեզմանն իջանել ընդ սիրելի արքայի իւրում, քանզի վկայ լինել անարգանաց հայրենեաց, յոր հասուցանել ունէր զնա Արտաւազդ: Այլ հարճք եւ՛ սիրելի կանայք եւ՛ մտերիմ ծառայք եւ՛ անթիւ ամբոխ ժողովրդեան՝ սրով կատարէին զկեանս իւրեանց զգերեզմանաւն: Արգիչք առաջի առնեն զզարմանցման արժանի մահուանս զայսոսիկ , որք ահաւորապէս ազդել ունէին յերեւակայութիւն Արտաւազդայ , յորս նա զաւերումն իւրոյ Թագաւորութեան տեսանէր: Յոյր սակս խռովի յոգի իւր որդի արքային Հայոց, եւ որպէս վերպասանքն ասեն, որովհետեւ »'ի մահուան Արտաշիսի բազում կոտորածք լինէին ըստ օրինի հեթանոսաց , դժուարի Արտաւազդ ասելով ցհայրն. »Մինչ դու գնացեր եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար. ես աւերակացս ո՞րպէս Թագաւորեմ:« Վասն որոյ անիծեալ զնա Արտաշիսի՝ ասաց այսպէս. »Եթէ դու յորս հեծցիս յազատ 'ի վեր 'ի Մասիս , զքեզ կալցին քաջք,

տարցին յազատ 'ի վեր 'ի Մասիս. անդ կացցես և զլոյս մի՛ տեսցես (82)։«

Յայսոցիկ բանից արքային մեռելոյ նկատել կարեմք ոչ միայն զազգին անսիրելութիւն առ Արտաւազդ, այլ և զհօրն ատելութիւն առ խռովարար որդին, յորոյ 'ի գլուխ զանէծս զայս արկանէ 'ի գերեզմանէ անտի. որ և կատարեցաւ իսկ։ «Բանզի, որպէս յառաջագոյն ասացաք, յորսալն իւրում զկողմամբք Մասեաց կինճս՝ անկաւ 'ի խոր իմն մեծ. և ըստ հօրն բանին՝ կալան զնա քաջք, տարան յազատն 'ի վեր 'ի Մասիս, և անդ յայրի միում արգելին զնա՝ կապեալ երկաթի շղթայիւք։ Երկու ևեթ շունք նորա հաւատարիմ գնացին զհետ տեառն իւրեանց. հանապազ կրծեն զշղթայսն առ 'ի ազատել զնա 'ի բանտէն (83)։ Իսկ նա անհամբեր մնայ կատարածի գործոյս, զի ելցէ և վախճան արասցէ աշխարհիս Հայոց։

Եւ այսպէս նորս այս Պռոմեթեւս շղթայակապ անկեալ դնի 'ի վերայ Մասեաց լերին անմահ և յար 'ի կատաղութեան՝ որպէս և 'ի կենդանութեան

---

(82) Խորէն. Գիրք Բ. Գլ. ԿԱ։

(83) Նոյն. Գիրք Բ. Գլ. ԿԱ։ »Զրուցեն պառաւունք և պատասանք, եթէ արգելեալ կայ յայրի միում՝ կապեալ երկաթի շղթայիւք. և երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն, ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի. այլ 'ի ձայնէ կռանահարութեան դարբնաց զօրանան, ասեն, կապանքն«։

իւրում։ 'Ի զուր աշխատ լինին շունք նորա հաւատարիմք· 'ի զուր և ազատութեան ակնկալութիւն· քանզի այնինչ մերձենան կենդանիքն 'ի կատարումն գործոց իւրեանց՝ հասանէ յունկս Արտաւազդայ ձայն կռանարկութեան դարբնաց Հայոց աշխարհին, և 'ի բազմաբարբառ արձագանգս հնչեալ ընդ ամենայն այրս Մասեաց՝ բաղխէ զսիրտ նորա, յուսակտուր թողեալ զմարդն ամենաչար։ Ընդ լուր ձայնից կռանաց 'ի նորոյ զօրանան շղթայքն· և չէք վախճան աշխատութեան հաւատարիմ կենդանեաց, չէք և սկիզբն ազատութեան արքայի։

Այս է ըստ մերումս կարծեաց՝ բովանդակութիւն և իմաստ հատուկտոր բանից, զորս յերգոցն առեալ՝ աւանդէ Խորենացի 'ի Պատմութեան իւրում։

Ոչ միանգամայն անտեղի համարիմք դնել աստ զքանի մի ծանօթաբանութիւնս՝ յարաբերեալս թէ՛ առ նշխարս նախնի աւանդութեանց մերոց և թէ՛ առ վիշապազունս, զոր ուշի ուշով քննել մաղթի ընթերցողն։

'Ի վեր անդր 'ի յառաջբերեալ հատուածոց վիպասանութեանց մերոց երեք ինչ նկատել մարթ է· մի՝ զրոյցք զԱրտաւազդայ անցեալ 'ի Վիրս և ընկալեալ 'ի բնակչաց աշխարհին· երկրորդ՝ է՞ր վասն Ազատ կոչի յերգս վիպասանաց լեառն Մասիս· և երրորդ՝ ո՞յք ոմանք էին վիշապազունք՝ բնակեալք առ ստորոտով Մասեաց։

Բուռն հարցուք զառաջնոյն 'ի խնդրոցս։ Որպէս վերագոյն տեսաք՝ նախնի Վահագն մեր հաւասարապէս առ Հայս և առ Վիրս 'ի շարս աստուածոց դասեցաւ, զոր և երկոքին ազգքս զոհիւք պաշտէին։ Եւ ոչ միայն զայս, այլ և զզրոյցս զԱրտաւազդայ ընկալեալ տեսանեմք առ Վիրս 'ի Հայոց։ Քանզի կնոջ յղւոյ ըմբռնեալ ասեն յերկանց զծննդաբերհայն և ծնեալ զորդի՝ Ամիրան անուն. զոր և մկրտել կամեցեալ մօրն՝ շուարեալ մնայր առ 'ի չգոյէ աւուն ուրուք։ Եւ մինչ սա այսպէս 'ի խորհուրդս ծփայր՝ եկն եկաց յանդիման նորա ծերունի ոմն, որոյ տուեալ մանկան զկնիք մկրտութեան՝ խոստացաւ ըստ կամաց մօրն, խնդրել 'ի Տեառնէ վասն մանկան զզօրութիւն մեծ, որ և շնորհեցաւ նմա յԱստուծոյ։ Զարգացեալ մանկան՝ յաղթող երևեցաւ յամենայնի՝ մեծամեծ շահատակութիւնս գործելով. գոռոզացաւ հպարտացաւ և զնոյն ինքն զԱստուած յանդգնեցաւ 'ի պայքար կոչել։ Ընդոր զչարեալ Տեառն երկնից փակեաց զնա 'ի միում լերանց Կովկասու երկաթի շղթայիւք։ Սուր Ամիրանայ անկեալ դնի մեկուսի. և միայն շուն նորա հաւատարիմ լեզու անդադար զշղթայս առ 'ի ազատել զնա 'ի կապանաց։ Հսկայն անզեղջ՝ անհամբեր մնայ գալստեան աւուրն, յորում ելեալ 'ի կապանաց՝ յագուրդ տացէ վրէժխնդրութեան իւրում։ Սակայն այլ է վճիռ վերին տեսչութեան. քանզի յաւագ հինգշաբաթւոջ ելանէ դարբին 'ի խորոց երկրի՝ բաղխէ սաստկապէս զսրբացեալ շղթայն,

որ 'ի նորոյ զօրանայ. և ինքն անհետ լինի նոյնժա-
մայն։ Այս լինի տարի 'ի տարւոջէ, և անշէջ մնայ
'ի կապանս իւր Ամիրան ([84])։

Այս առասպել ոչ այլ ինչ է բայց եթէ հաստ-
ուած ինչ 'ի հին վիպասանութեանց Հայոց, որ՝
անցեալ առ Սերիացիս, սակաւ մի այլևայլութեամբ
ընկալեալ եղև 'ի նոցունց։ Յերկոսին յաւանդու-
թիւնսդ տարբերութիւն տեսանի միայն յանուանս
Արտաւազդայ և Ամիրանայ և լերանց, յորս նոքա
կալեալ կան կալանաւոր, առաջինն 'ի Մասիս,
երկրորդն 'ի Կովկասեան լերինս։ Նաև այլ ամենայն
հանգամանք առասպելին Սերաց նոյն են ընդ որոց
յերգս Գողթան զարքայեն Հայոց պատմին։ Նաև զի
զրոյցն Սերաց 'ի մերոց 'ի փոխ առեալ է՝ յայտ
անի է, զի մայր Ամիրանայ՝ որպէս և յետինս
այս, քրիստոնեայք են. իսկ մերն Արտաւազդ և՛
քաջք և՛ երգք զնոցունց 'ի հեթանոսութեան անդ
ունին զսկիզբն։ Բայց ասացելոցս և զայս ինչ ոչ
աւելորդ վարկանիմք յաւելուլ, եթէ՝ որքան ես
գիտեմ, առասպելն Սերաց իբրև առանձին իմն պատմի
առ նոսա՝ առանց ունելոյ յարակցութիւն ինչ ընդ
նախընթաց կամ յետագայ պատմութեան նոցա. այն-
ինչ առ մեզ պատմական նշանակութիւն վիպասան-
ութեանս չէ անծանօթ բանասիրաց։

---

([84]) 'Ի զրուցաց առեալ՝ գրեմք աստ զայս առասպելս որպէս
և պատմեցաւ մեզ, առանց իրիք այլայլութեան։

Յերգս Գողթան ասի. «Եթէ դու յորս հեծցիս յազատ 'ի վեր 'ի Մասիս, զքեզ կալցին քաջք, տարցին յազատ 'ի վեր 'ի Մասիս. անդ կացցես և զլոյս մի' տեսցես (85)։«

Այս հատուած փոքրիկ տայ մեզ իմաստասիրել զկարծիս, զոր ունէին նախնիք մեր զլեռնէն Մասեաց, զբնակչաց նորին և զյատկութենէ։

Արարատեան լեռան, յորոյ վերայ հանգեաւ տապանն Նոյի՝ 'ի պատմութեան Հայոց Մասիս կոչեցաւ յանուն Ամասիա նահապետին մերոյ (86)։ Անուանակոչութիւնս այս սովորական է առ Հայս, իսկ առ օտարազգի մատենագիրս դուն ուրեք տեսանի։ Ըստ յաւանդութենէ Սուրբ Գրոց, որ 'ի համաշխարհական ջրհեղեղէն զառաջինն զսա ասեն ելեալ 'ի ջուրց, զնոյն և նախնի զրոյցք աշխարհիս հաստատեն գեղեցիկ բանաստեղծական ոճով։ Քանզի ասեն, եթէ ծփալով հասանէ տապանն Նոյեան 'ի Գորդուաց լեռն, որ երկրորդ է բարձրութեամբ 'ի լերինս Հայոց, և զբանս առ նա դարձուցեալ ասէ. »Գորդուաց՝ տո՛ւր ինձ.« որոյ պատասխանի արարեալ՝ ասէ պատկառանօք. »Գնա 'ի Մասիս, նա երէց է քան զիս (87)։«

(85) Տե՛ս 'ի վեր անդր բերեալ հատուածն 'ի Խորենացւոյ։

(86) Խորեն. Գիրք Ա. Գլ. ԺԲ. »Ըստ այսց շինեաց՝ Ամասիա անուանեալ էր անուամբ Մասիս։«

(87) Հ. Ինճիճեան. Նոր Հայաստան. եր. 178։

Զկնի իջանելոյ տապանին 'ի գլուխ լերինն՝ եկաց և մնաց Մասիս 'ի պատմութեան և 'ի վէպս Հայոց իբրև կենդրոն գլխաւոր, յոր ընդերկար ժամանակս ձգէին ամենայն զօրութիւնք ազգիս։ Համագոյն մեծամեծ լերանց երկրի և նա հուչակաւոր եղև առ Հայս՝ որպէս Հիմալայեա առ Հնդիկս և Ողիւմպոս առ Յոյնս։ Նոյնքան մեծ էր առ նախնիս մեր պատիւ նորա, մինչև տաճկչէն ըմն աշխարհ համարել՝ անմերձենալի և ահաւոր զնա տարողելով։ Մինչ ցայս օր ժամանակի զՄասեաց խօսելով՝ բնակիչք Երևանայ »Մուրճն աշխարհ (58)« կոչեն զնա. և այս մականուն 'ի վաղ ժամանակաց անտի պահպանեալ թուի և արդարանայ բանիւք Երգոյն Գողթան, որ ասէ, »Ո՞նդ կացցես և շլոյս մ' փեղցես։« Յայս աշխարհ խաւարչտին եթէ դէպ լինէր ումեք մտանել, ոչ ևս դառնէր անտի ելս. քանզի բնակիչք նորին՝ Վիշապք (59), որ ոգիք էին և ոչ մարդիկ,

(58) Մեսրովբ Թաղիադեանց, Ճանապարհորդութիւն 'ի Հայս, Կալկաթա, 1847, հատ. Ա. եր. 167։

(59) Վիշապ գոյական անուն է և ոչ ածական. մին 'ի հնագոյն բառից լեզուի մերոյ, յորոց բազումք մինչ ցարդ պահպանեալ կան 'ի հին գրչագիր բառարանս։ Ի հնումն և 'ի միջներորդ դարու այսուիկ բառք կարօտէին մեկնութեան, քանզի նշանակութիւն նոցա ոչ էր ամենեցուն ծանօթ։ Գուցէ 'ի սոցանէ բաղկանայր դիւցազնական լեզու հայոց (langue héroique) կամ լաւ ևս ասել՝ լեզու Վիշապաց։ Զենդերոյս այլուր ծառայեալ լինի. ևս

կալեալ՝ կալանաւոր պահեին զնա · զոր և արարին իսկ Արտաւազդայ:

Միւս այլ մականուն լերինս է Ազատ, զոր միայն յերգս վիպասանաց տեսանեմք և առ երկուս մատենագիրս ևեթ, որք ՚ի կիր առնուն զբառդ ՚ի ճառելն զանկմանէ Արտաւազդայ ՚ի վիհ ([60]), այն է՝ առ

---

այժմ ասասցուք, եթէ բառդ Քաջ՝ գոյական գոլով ՚ի հնումն նշանակէր Ոգի · որոյ և սեպհական կերպարանութեան տեսանել ունիս ՚ի բարդեալն ՚ի նմանէ Քաջակալ, այսինքն՝ կալեալ ՚ի քաջէ, այսահար, бѣсноватый, possédé: Զայս բառ հայոց գտանեմք և առ Մերս ասելով մի փոփոխութեամբ ՚ի ձայնին · տանել և ՚ի նոյն լեզու Քաջի՝ Ոգի չար: Մասն որոյ սխալեն մեծապէս, որք ըստ բառերդ՝ արի իմանալ կամին · այդ յետին ժամանակաց է ստուգաբանութիւն: Վայլան Փլորեվայլ անծանօթ գոլով բուն նշանակութեան բառիդ՝ այսպէս թարգմանէ շքեղեալ հատուած Խորենւոյն. »Si tu vas à cheval chasser sur le noble Massis, *les braves habitans* te prendront, te méneront sur le noble Massis; tu resteras là, et tu ne verras plus la lumière.« (Hist. d'Arménie, Paris, Livre II, p. 291.). Չեն այդ բանք զարի բնակչաց Մասեաց, այլ զոգւոց, զոր երևակայութիւն նախնի հայոց ՚ի լերինս և առասպելօք ՚ի Մասիս բնակեցուցանէր:

([60]) Հ. Ինճիճեան. Հնախօսութիւն Հայաստանեայց աշխարհի. հատ. ա. եր. 61:

Աժդահակայ.... յորս էին Թագաւորազունք, նաև Թագուհին առաջին տիկինն Աժդահակայ։ Արդ որպէս յայտ է... առ մերոն քանզի ասէ կոչէին ազնըւականք և քաջազունք, յայնմանէ երգիչք Գողթան բանաստեղծք՝ զտեղին ևս բնակութեան ազնուականացն կոչեցին ասէ (63)։« Այս ստուգաբանութիւն ոչ միանգամայն արդարանայ յաչս մեր, թէև առն իմաստնոյ են կարծիք. յորոյ վերայ եթէ հիմնել կամեսցուք զսկզբնաւորութիւն անուանդ Ազատ՝ հարկ լինի յայնժամ առ գերութիւնն Մարաց յարաբերել զայն, և յազատութենէ կամ յազնուականութենէ բնակչաց և զանունդ 'ի Գողթան երգչաց հնարեալ ասել։ Սակայն՝ որպէս վերագոյնն ասացաք, ոչ եթէ սոսկ լեառն, այլ ասանչէն ընդ աշխարհ համարէին նախնի Հայք զՄասիս. և ազգային երգիչք՝ մանաւանդ վիպասանք 'ի հնումն առ ամենայն ազինս, ոչ եթէ զինքնահնար ծնունդս մտաց իւրեանց մուծանէին յերգս, այլ զաւանդութիւնս ազգի իւրեանց առեալ, սակաւ մի սեթևեթեալ՝ 'ի նորոյ առաջի ժողովրդեան երգէին, որ և ընդունէր զայնս իբրև զսեպհական իւր և ոչ զմտացածին։ Զայն ևս 'ի յուշ բերցուք, եթէ այդպիսի երգք զպատմութեան ունէին զտեղի առ հինսն՝ որպիսի

---

(63) Հ. Ինճիճ. Հնախօսութիւն Հայ. հատ. ա. եր. 61։ 'Ի վերայ այոր հիման և Գաղղիացի թարգմանիչն Խորենացւոյ զլեառն Ազատ՝ *noble* թարգմանէ, »te mèneront sur le *noble Massis*«.—p. 291.

Աշխարհական է Հոմերոսի և Մատեանն Թագաւորաց Ֆերդուսի պարսիկ բանաստեղծին, յորս սոքա և նմանիք սոցա առանց իրիք այլայլութեան զազգային աւանդութիւնս 'ի չափաբերական բանս աւանդէին։ Այնն իրի և վիպասանաց Հայոց՝ Թուի ինձ, զան–ունդ տղայ 'ի հնագոյն ազգային աւանդութեանէ առեալ և Մասեաց լերին ընծայեալ, և ոչ եթէ հնարեալ 'ի ժամանակս գերութեան Մարաց։ Նոյն ինքն Խորենացին՝ զհետ գնալով ազգային աւան–դութեանց և [illegible] վասն մարդկան լերինս այսորիկ կամելով ցուցանել՝ այսպէս առ Սահակ Բագրատունի դարձուցեալ զբան իւր ասէ. «Նու–արդ ո՞չ առաւել աստանօր զարմասցիս 'ի վերայ մերոյ Ճշմարտապատմութեանս, [illegible] [illegible] [illegible], որք են [illegible] 'ի վեր 'ի Մասիս [04]։« 'Ի հինգերորդ դարու Քերթողն մեր զլեզու ազգին խօսելով [illegible] քարոզէ զոր ինչ առ Մասիս վերաբերի, որով իբրև մատամբ ցուցա–նէ զհնութիւն աւանդութեան և կարծեաց նախնեաց մերոց զլեւոնէս։ Աստի՝ նախ քան զգերութիւն Մարաց դասեալ զանուանակոչութիւնդ տղայ, պարտ լինի մեզ այլուր խնդրել զստուգաբանութիւն բա–ւիդ, որ ոչ հակառակիցէ աւանդութեան մերոցն։ Նու այսպիսի իմաստուն մեկնութիւն առ Մեսրովպայ Թարգմանչեանց տեսանեմք, որ ասէ...« առաջին յան–ուանակոչութեանց սորա (Մասեաց) համարիմ ես

---

([04]) Խորեն. Գիրք Ա. Գլ. Լ։

անուանդ Նոնոյ.... երկրորդ անուն նորա և սեպհական՝ համարիմ զՆղափն՝ նախնագոյն քան զՆորմայիս, ուստի Մասիսն անուանեցաւ։ Հաստատէ զմեր կարծիս՝ կնոջ յղւոյ մեծ օրհնութիւն 'ի Հայաստան համարել և ասել՝ »Աստուած բարի ազատումն տայ քեզ. Նարեաւ ազատիս։« — Կնոջ ծնելոյ ոչ ասեմք ծնաւ, զի այդ կովուց և ոչխարաց է. այլ ասեմք ազատեցաւ։ Նպաքէն իրաւամբ կոչի Մասիս մեր Նղափ, այսինքն՝ Մայր ազատեալ յերկանց ծննդեան Խարոյ ([65])։« Այս ստուգաբանութիւն՝ համաձայն գոլով աւանդութեանց աշխարհիս, որում նախ քան զամենայն յիշատակ երկնաստահմանաց հեղեղաց անբաժ ունել պարտ էր 'ի լեռնէս՝ որ զառաջինն ազատեցաւ՝ ամբարձեալ զգլուխ իւր 'ի ներքոյ ջուրց, զկնի երկանց ունողաց զնա — առաւել հաւանական թուի մեզ քան զԱնձիձեանին։ Նա այսպէս 'ի հնագոյն ժամանակաց անտի՝ գուցէ և նախ քան զգալուստ Հայկայ 'ի Հայս, յարմարեցաւ այս անուն 'ի համար լերինն Մասեաց 'ի բնիկ բնակչաց երկրիս, զորոց 'ի հարևանցի յիշէ Խորենացին 'ի Պատմութեան իւրում ([66])։ Այլ այս շատ է. անցցուք այժմ առ երրորդ խնդիրն, այն է՝ թէ ո՞յք ոմանք էին Վիշապազունք։

---

([65]) Մէոր. Թղթակցէանց. Ճանապարհորդութեան 'ի Հայս, հատ. Ա. էր. 167։

([66]) Նշնէ նախ քան զգալ Հայկայ յերկիր մեր գոյին անդ բնիկ բնակիչք՝ փետանեւ հարեւ 'ի յետագայ վկայու-

զսասա. սակայն առ երևելի և զօրաւոր գաղթականս մեր ունել պարտ է զՄարս. յորոց 'ի զարմէ Վաղարշակ երկրորդն թագաւորութեան (67) ընտրեաց՝ կոչելով զնա Մարացւոց Տէր, կամ՝ որպէս խուժանն ասէր, Մուրացան Տէր: Երկրորդականս այս գահ՝ շնորհեալ յարքայէն մերմէ Մարացւոց ազգին, զնոցին զօրութիւն յաշխարհին Հայոց ցուցանէ: 'Ի բանից վիպասանաց՝ առ Խորենացւոյ յառաջ բերելոց, նկատեմք զՄարացիս կամ զՎիշապազունս 'ի գերագոյն կէտ իշխանութեան և զօրութեան հասեալ 'ի Վաղարշակայ անտի մինչև ցաւուրս Արտաշիսի երկրորդի: Եւ ոչ ոք յերկուասցի յառաջելոցս՝ 'ի յուշ բերեալ, եթէ 'ի դաստանէն Արտաշիսի յաշխարհէն Պարսից հանդերձ Սմբատաւ առ 'ի ընկենուլ յիշխանութենէ զԵրուանդ և բարձիլ յաթոռ հայրենի, կասկած մեծ էր նորա յԱժդահակայ՝ նահապետէն Մուրացանաց, որ տէր էր ծովուն Գեղարքունոյ. վասն որոյ աշխատ լինէր արքայ յինքն յանկուցանել զնա մեծամեծ խոստմամբք և պարգևօք: Վտանգի առանց սորա օգնականութեան և հաւանութեան եթէ ոչ միանգամայն անհնարին՝ գոնեայ դըժուարին յայժ համարէր արքայ զիւրն յաղթութիւն 'ի վերայ Երուանդայ: Զկնի տիրապետելոյ իւրոյ՝ Արտաշէս կատարէ զխոստմունս իւր առ Արգամ՝ յաւելեալ և զգահն երկրորդական:

Հանգամանքս այսոքիկ իբրև մնացեալք ցուցանեն

(67) Խորէն. Գիրք Բ. Գլ. Է.:

զհզօր լինելն Մարաց յաշխարհի մերում, ուր սոցա յաւուրց անտի Տիգրանայ մինչև ցերկրորդն Արտաշէս (այսինքն՝ ՚ի 565 ամէ նախ քան զՔրիստոս մինչև ց129 ամ տեառն)՝ հարկաւ պարտ էր սերիլ և բազմանալ մինչև ահաւոր լինել նաև արքային Հայոց։ Վասնզի ասէին զնահապետէն Մարացւոց՝ զԱրգամայ, յաւուրս Արտաշիսի խորհիլ թագաւորել աշխարհիս մերում. որոյ վասն յանակնկալս զօր առաքէ ՚ի վերայ նորա արքայ՝ հրամայելով ՚ի հուր և ՚ի սուր մաշել զտեղի բնակութեան և զբնակիչս՝ մանաւանդ զերևելիս յազգէն Մուրացան. զոր և կատարեցին իսկ արքայորդիքն (68)։ ԶԱրտաւազդայ սկսեալ անհետանայ միանգամայն ՚ի պատմութենէ մերոյ ոչ միայն նահապետութիւն Մարացւոց, այլ նաև յիշատակութիւն զարմին Աժդահակայ։

Յընթացս իբրև եօթն դարուց ՚ի պատուի և յիշխանութեան եկաց ազգս այս եկաւոր ՚ի Հայաստան աշխարհի. և այնքան հզօր եղև՝ մինչև վիպասանաց մերոց զգործս նոցին մուծանել յերգս իւրեանց, մանաւանդ զոր ինչ նոքա գործեցին ՚ի վերջին ժամանակս Երուանդայ, Արտաշիսի երկրորդի և երկրորդին Արտաւազդայ։ Մերքն ՚ի հնումն զազգս զայս Վիշապազունս անուանեցան անուանել՝ որպէս վերագոյն ասացաք, յարևելեան կողմանէ Մասեաց բնակեցուցանելով զնոսա։ Եւ որովհետև առ ստորոտով անմատոյց լերինս էր տեղի բնակութեան նո-

(68) Խորէն. Գիրք Բ. Գլ. ԾԱ։

ցա․ յոյր տակս և երգիչք ՚ի քերթուածս իւրեանց գուցէ երբեմն խառն ընդ տաղոց և դիւցազնական երգելին։ Յոլով անք անցին ՚ի վերայ ՚ի ժամէ ան-տի. քաղաքք, գիւղք, բերդք, ապարանք Արարատ չինեալք ՚ի Հայաստան, ապականեալ կործանեցան (69), և չմնաց արձան յիշատակի քաջ ազգիս այսորիկ՝ բայց յայնցանէ Թերևս, զորոց Մեսրովպ Թաղիա-դեանց ճառէ ՚ի Ճանապարհորդութեան իւրում։ Մինչ ցայս օր ժամանակի ՚ի վերայ գագաթան փո-քուն Մասեաց՝ ըստ ասից Հայ Ճանապարհորդիս, »Կան քանի մի տապանք կճեայք, և հինգ կամ վեց ոտնաչափ Թանձր, որ ՚ի ձև գերեզմանաց ընկողմա-նին զեզերօք լճին և կոչին »Գերեզմանք ոչայից,« ռամկօրէն »Ողուղի գերեզմաններ.« քանզի Թէև յա-տուկ անուն ևս իցէ, սակայն Արարատեանք Ողուղ զՀսկայն կոչեն այլազգերէն (70)։« Գերեզմանքս այ-

(69) Նոյն գիրք և գլուխ։

(70) Մ. Թաղիադեանց, Ճանապարհորդ. ՚ի Հայս, հատ. Ա. եր. 171 — 72։ Ոչ աւելորդ համարիմ բերել աստ զարժանին ընթերցանութեան գեղեցիկ նկարագրութիւն գագաթան փոքուն Մասեաց, զոր առաջի առնէ մեզ ՚ի յիշեալ ճառին իւրում գիտնական հայրենասէրն մեր Թաղիադեանց։ Այս են բանք նորա այսպէս. »Կրկին է Մասիս՝ Մեծ և փոքր։ Մեծ Մասիս անուա-նի տիրապէս կոչեցեալ ՚ի մեզ Արարատ. այն՝ անմա-տոյց ՚ի մարդկանէ և յանդապար գագաթն լերին, ուր հանգեաւ տապանն Նոյի։ Այս փոքր կոչի Ճիւղ Նո-

Դակիկի մասնաւորապէս, իսկ հուսկ ուրեմն հռչակաւորն Ֆերդուսի՝ նիւթ առեալ վասն պատմական քերթուածոց իւրեանց, յաւերժացուցին 'ի յիշատակ ապագայից՝ մնացական յետինս այս 'ի Սասանեան Թագաւորաց։ Թէեւ միայն առասպելքն Բիւրասպի Աժդահակայ առանձինն պատմեալ տեսանի առ Խորենացւոյ. սակայն մարթ է առանց բռնաբարելոյ զպատմութիւն հետեւեցուցանել, եթէ եւ այլ մասունք առասպելեացն Պարսից ծանօթ էին Հայոց, յորոց 'ի միջի տարածեալ էր զայնս գաղթականացն Մարաց։ Վասնզի արդարեւ 'ի Պատմութեան Վերթողահօրն գտանեմք յիշատակութիւն նոյնպէս եւ զՌոստոմայ Սագճկէ (71), որ Հերակլն է Արեաց աշխարհի եւ մին 'ի գլխաւոր դիւցազանց Սասանեան Թագաւորաց, յորոյ 'ի ձեռն մեծամեծ արութիւնք եւ սքանչելիք գործեցան։ Բաց յայսմանէ նաեւ հետազօտութիւն իշխանին Հայոց՝ Սահակայ Բագրատունւոյ, որ զհարիւրամեանն ծերունի զայր եպիսկոպոս աշխատ առնէ՝ պահանջելով 'ի նմանէ զլուծումն խնդրոյն, զմեր կարծիք արդարացուցանէ. այն ինքն է՝ եթէ առասպելս այս եմուտ 'ի Հայաստան 'ի ձեռն Աժդահակեանց կամ Վիշապազանց, որք առ Տիգրանաւ մերով ածեալք 'ի Հայս՝ ապաքէն ընդ ինքեանս բերին եւ զազգային աւանդութիւնս, յորս Մեդացի Թագաւորացն՝ այն է արիւնակցաց (72)

---

(71) Խորէն. Գիրք Ա. Գլ. Ը.

(72) Sir John Malcolm, Histoire de la Perse, Paris, 1821, T. I, p. 311.

իւրեանց՝ մանաւանդ Հրուդենայ պատմէին գործք։ Իսկ եթէ այս այսպէս, ապա ուրեմն մարթ է աւանց դանդաղանաց ասել, եթէ սկիզբն՝ որպէս առասպելին Լիւրասպի և Հրուդենայ, նոյն և այլոց պատմական առասպելաց Պարսից, զորս գնի արձանացոյց Ֆերդուսի ՚ի վիպասանութեան (73) իւրում,

---

(73) Վիպասանութիւն տաղաչափ՝ չէեր գնալով կարծեաց Scott-Waring Անգղիացւոյն, որ շարագրէ Բանաստեղծէն ճառելով ասէ. »C'est à tort, selon moi, que l'on a donné à Schah-Nameh le nom de *poëme épique*, et que Sir William Jones l'appelle une suite de poëmes épiques. Cet ouvrage renferme *l'histoire d'une période de trois mille sept cents ans*. Quoique les critiques n'aient point indiqué *la durée que doit avoir l'action du poëme épique*, on ne saurait la prolonger autant que fait Ferdousi. Son ouvrage est d'ailleurs bien plutôt un *poëme historique* comme la Pharsale de Lucain, qu'un poëme épique, comme l'Iliade et l'Enéide. On peut dire du *Schah-Nameh que c'est un poëme historique animé par des fables*. Je ne pense pas que Ferdousi se soit proposé pour but de faire tourner son poëme au profit de la morale, ni qu'il ait eu d'autre intention que de raconter les faits qu'il avait receuillis dans les traditions persanes, ou dans les legendes des Guèbres. Les récits sont embrouillés et confus, et ne peuvent souvent être compris que par la connaissance des parties antérieures de l'ouvrage. Les épisodes sont enchevêtrés les uns dans les autres; la paix et la guerre se succèdent; les siècles s'écoulent sans qu'on remarque aucun changement dans la marche du poëme; le même prince résiste aux armes des Persans; le même héros conduit ceux-ci à la victoire. Il a fallu supposer deux Afrasiab et deux Roustom pour diminuer la confusion du mythe. Dans l'Iliade, le caractère de Nestor produit le plus grand effet; son éloquence, l'expérience qu'il à acquise par ses longues

'ի վաղնջուց ժամանակաց անտի է։ Նոյն որովհետև Մարացի գաղթականքս անան յաշխարհ մեր 'ի 565 ամի նախ քան զՔրիստոս. ապա ուրեմն և ծագումն պարսկական առասպելաց պարտ է՝ ոչ եթէ 565 ամի, այլ և՛ս հնագոյն ժամանակաց ընծայել։ Նայս արդարև այսպէս հարկ էր լինել. քանզի այդ վէպք ոչ այլ ինչ է՝ բայց եթէ պատմութիւն առասպելախառն, զորս նախնի ազինք կարկատեցին՝ զհետ գնալով ոչ այնքան ճշդութեան՝ որքան երևակայութեան իւրեանց։ Վէպքս այսոքիկ՝ որովհետև զտեղի պատմութեան ունէին առ նոսա, մանաւանդ առ Արևելեանս. սմին իրի և հարկ էր կարկատել զայնս անմիջաբար զկնի իրացն եղելոց։ Նոյն այս 'ի սկզբան անդ առաւելապէս աւանդութեամբ լինէր յազգաց յազգս առ 'ի չգոյէ նշանագրաց. իսկ յետ գտանելոյ զգիր՝ մեծաւ ուշիւ 'ի Տոփէանս Թագաւորաց (74) մուծանէին զայնս, զորս և յարքունի դիւանս

---

anuées, lui donnent le pouvoir admirable d'apaiser les dissensions qui s'élèvent dans le conseil. Mais à quoi sert le grand âge de Zal et de Roustam, puisque ces héros jouissent du même privilége que tous les autres princes? » Տե՛ս La Perse, par Louis Dubeux, Paris, 1841 p. 437.

(74) Ըստ անուան, զոր Փերդուսի Վէպասանութեան իւրում տայ՝ ընդհանուր անուանակոչութեան էր Պատմութեան 'ի հնումն առ Արևելեանս, յորում սոփս փերապէս զգործս Թագաւորաց երգէին կամ պատմէին։ Յայս սոյն և Խորենացին 'ի բազում տեղիս Մատեանն Թագաւորաց կոչէ զՊատմութիւն։

պահպանեալ պահէին։ Առ այս յաւելից և զարժա-
նայիշատակ բանս ծերունւոյն Խորենայ, որ զպարս-
կական առասպելեաց ճառելով՝ զխօսս առ Սահակ
Բագրատունի դարձուցեալ ասէ. «զորոց (այսինքն
Պարսից) առեալ զբանս և զգործս, այնոցիկ մանա-
ւանդ թէև լուրն իսկ զլսելիս մեր տաղտկացուցա-
նէր, այսօր ձեռամբ իմով շարագրեմ զայնոսիկ,
միոյ անմտութեան նոցա տալով, և ընարէ վիպաց
նոցա էրս և նոցա անհեթեթելիս տառէիկ յայտնեսցէ. միայն
թէ և քեզ յայսոսիկ ուրախութիւն և կամ շահ
օգտութեան (78)։»— Զառասպելս Պարսից 'ի հինգ-
երորդ դարու մատենագիրն մեր ընարէ վիպաց և նո-
ցա անհեթեթելի էրս կոչէ. եթէ կարի վաղուց, ապա
և հնագոյն քան զվեցերորդ դարն նախ քան զՔրիս-
տոս՝ այն է, նախ քան զգալն Մարաց 'ի Հայս. որ
և արդարանայ իսկ անհեթեթելի լինելովն իւրացն նո-
վաւն Պարսից։ Այս գրաւոր յիշատակութիւն առ
Խորենացւոյն՝ որքան ես գիտեմ, հնագոյն է քան
զոր նոյն իսկ Պարսից մատենագիրք պատմեն զազգա-
յին վիպասանութեանց իւրեանց, զորս 'ի մի ժողո-
վեալ անմահացոյց Ֆիրդուսի 'ի սկզբան մետասան-
երորդ դարու։ Զնմանօրինակ յիշատակութիւն զա-
ռասպելացս առ Պարսիկս 'ի վեցերորդ դարու և եթ
տեսանեմք. ապա ուրեմն որ առ Խորենացւոյն բանք՝
միով դարու նախնագոյն քան զնոցայն են։ Սակայն
մեք առ 'ի կատարելապէս խելամտութիւն խնդրոյս

---

(78) Խորէն. 'ի Վերջ Առաջին գրոց։

ոչ ամենայն համարիմք բերել աստ զհատուածս 'ի յիշեալ գլխոց Պատմութեան Խորենացւոյ և մինչ 'ի քննին առնուլ զայնս։ Վասնզի յիշատակութիւն պարսկական առասպելեաց առ Հայ մատենագրին նոր իմն լոյս կաթեցուցանել ունի՝ ըստ մերումս կարծեաց, 'ի պատմութիւն գրականութեան Պարսից ըստ մասին ծագման և սկզբնաւորութեան նոցին։

Եւ այս է սկիզբն բանից պատմաբանին մերոյ,

»Բայց զինչ արդեօք տարփանք քեզ՝ և Բիւրասպի Աժդահակայ փծուն և անճոռնի առասպելքն իցեն. և կամ էր սակս զմեզ Պարսից անյարմար և անոճ՝ բանից, մանաւանդ թէ առաւել վասն անբանութեան, առնես աշխատ, և »Բնբարի առաջնոյ նորա բարերարութեան, և դիւաց նմա սպասաւորութեան, և ոչ վրիպեցուցանել կարելոյ զվրիպեալսն և զստուտս. և ուստի համբաւորումն և անդուստ զվիշապացն ծնունդս. և յայնմ հետէ չարութեան յանձնութիւն՝ ծախել զմարդիկ 'ի պէտս որովայնի. իսկ ապա և Հրուդենայ ումեմն կապեալ զնա սարեօք պղնձիւք և 'ի լեառն տանել, որ կոչի Դըմբաւընդ. այլ և 'ի ճանապարհի զննջելն Հրուդենայ, և Բիւրասպեայ քարշելն 'ի բլուրն, և զարթչելն Հրուդենայ, և տանել զնա յայրս ինչ լերինն և կապել, և զինքն անդրի ընդդէմ նորա հաստատել. յորմէ պակուցեալ՝ հնազանդեալ կայ շղթայիցն և ոչ զօրէ ելանել և ապականել զերկիր. »զինչ քեզ առ այսոքիկ կարօտութիւն առասպելքս սուտք, և կամ զինչ

պէտք անմիտ և անհամեմատ բանից յարմարանք, և այլն։

ʻՆշան՝ առաջին պարտ է 'ի բանս Խորենացւոյ յառել զուշ միոց մերոց յանուանս Բիւրասպ Աժդահակ և Հրուդէն, և ցուցանել զհնկութիւն յատուկ անուանցս այսոցիկ՝ քննելով և բաղդատելով զայնս ընդ պարսկական անուանց, զորս առ Ֆերդուսի բանաստեղծին գտանեմք։ Յետ այս 'ի Մատենին Թագաւորաց զոր ինչ Խորենացին Բիւրասպի Աժդահակայ և Հրուդենայ ընծայէ, Զոհակայ տայ և Ֆէրիտունայ՝ վեցերորդին 'ի շարս արքայից Պարսից, սակայն մի փոփոխելով զկերպարանս աւանդութեան (76)։ Բանաստեղծն Պարսից զգործս չարաբարոյին Զոհակայ առասպելաբանելով՝ ընծայէ նմա զմականուն Փէյուրասպ կամ Փէյվէրասպ, իսկ ըստ հայկական հնչման Բիւրասպ, որ առ մեզ տէր բիւր երիվարաց նշանակէ։ ʻՆոյնութիւն երկուց մականուանցս անկեղծ տեսանի. յոյր սակս և մեք ոչ յերկարեսցուք աստ զբանս՝ ժամավաճառ լինելով և ընդվայր զապացուցութիւն խնդրելով կարծեացս։

Իսկ որ փոքր մի վարանական թուի՝ Աժդահակ է անուն, որ 'ի վերայ նորին իսկ Բիւրասպի առի. սակայն և զայդ չէ դժուարին մեկնաբանել առաջի ունելով զբնիկ պարսկական անուանս։ Հաւանական թուէր ինձ երբեմն՝ զԱժդահակ անուն, որովհետև վիշապ առ մեզ թարգմանի, յարմարեալ կարծել 'ի Խորենացւոյ կամ 'ի նախնեաց Հայոց 'ի պատ-

(76) Տե՛ս Livre des Rois, trad. par J. Mohl — *Zohac*.

Ճառս վիշապաց՝ 'ի համբուրմանէ դիւէն զուսս Բիւրասպի բուսելոց 'ի վերայ նոցին, և իբրև յատկանիշ նման ընծայեալ՝ որ թէև առանց բանաբարելոյ զճշմարտութիւն՝ զնորին յինքեան բերէ զնմանութիւն, բայց և այնպէս ոչ միանգամայն արդարանայ յաչս մեր։ Քանզի 'ի քնին առեալ զՕոհակդ անուն և զզանազան արտաբերութիւնս նորին՝ դիւրին է նկատել 'ի նմին զփոփոխակերպեալն Աժդահակ Խորենացւոյ։ Այս պարսիկ բանաստեղծին արդարև Օոհակ տեսանի գրեալ այդ անուն, որում՝ ըստ մեզ, նոր ձև պարտ է լինել. քանզի նախնական ձև անուանդ Զոհակ և Դհոհակ թուի լինել, զոր և 'ի կիր առեալ առ Պարսիկս գտանեմք։ Աստի Աժդահակ ոչ այլ ինչ է, բայց եթէ տառադարձեալն Զոհակ, կամ լաւ ևս ասել Դհոհակ. աստի Դհոհակ կամ Աժդոհակ կամ Աժդահակ՝ մեզ մի և նոյն անուն կարծի լինել։

Ապա ուրեմն Օոհակ Բէյուրասպն բանաստեղծին է նոյն ինքն Աժդահակ Բիւրասպն Խորենացւոյ։

Միւս այլ յատուկ անուն, զոր առ Քերթողահօրն տեսանեմք 'ի վեր անդր յառաջ բերեալ 'ի բանս նորին, է Հրուդէն։ 'Ի վիպասանութեան պարսիկ բանաստեղծին Ֆէրէդուն կոչի, որ մարտ եդեալ կռուի ընդ Բիւրասպայ և նկուն արարեալ սպանանէ զնա։ Օֆերիդունս զայս, որ և Աֆրիդուն, մարթ էր ապաքէն տառադարձութեամբ փոխակերպեալ համարել 'ի Հրուդէն, որ նոյն է ընդ անուան արքային Պարսից. որում և հաստատութիւն

զտանել կարեմք 'ի քանի մի պարսկական բառս, որ Ֆ տառիւ սկսանին. և 'ի մտանելն 'ի հայ լեզու՝ փոխեն զայդ գիր 'ի հ, որպէս է տեսանել յանուանդ Ֆէրէդուն և 'ի բառսդ Ֆէրման, Ֆէրէշտէ, Ֆարման, և այլն. որք առ մեզ հնչին և գրին Հրուդէն, հրաման, հրեշտակ, հրաւար, և այլն. սակայն մեզ առաւել հաւանական թուի ասել, թէ և յայբուբենս մեր՝ հնարեալս 'ի սրբոյն Մեսրովպայ, ոչ գոյր գիրդ Ֆ, որով սկսանին յիշեալ պարսկական բառքդ, յորոյ 'ի ձեռն և հնարաւոր լինէր յայտնել զայդ ձայն պարսկական 'ի լեզուի մերում, մարթ էր ապաքէն նախնեաց մերոց 'ի ձեռն † գրոյ բացատրել զայն, որպէս և առնէին իսկ նոքա 'ի փոխադրելն 'ի հայ լեզու զյունական բառս։ Բայց որովհետև զայս ոչ առնեն նախնի մատենագիրքն մեր՝ Մովսէս Խորենացի, Ղազար Փարպեցի և այլք. յայտ ուրեմն է, եթէ այդ հնչիւն պարսկական բառից 'ի ձեռն հ գրոյ գուցէ և չէ իսկ տառադարձութիւն, այլ բուն հնչումն, որով արտասանէին զյիշեալ բառսդ Պարսք 'ի հնումն. յորոց 'ի լեզուէ առեալ հեղինակք մեր՝ անայլայլելի պահեցին զայնս 'ի հայումն. այն ինչ Պարսիկք յետին ժամանակաց զհ 'ի Ֆ փոխել ախորժեցան։ Այլ այս աւելորդ եղև մեզ ասել։

Իսկ մեք 'ի վերայ բերցուք, եթէ Հրուդէն Խորենացւոյ Ֆէրէդունն է Ֆերդուսի բանաստեղծին, որպէս ակն յանդիման ցուցաք 'ի վեր անդր բերեալ օրինակօք։

Իսկ այժմ եթէ 'ի քնին առցուք զառասպելն պարսկական առ Խորենացւոյն՝ անհնարին լինի չզար-

մնալ ընդ ճշդութիւն, որով հաղորդէ մեզ դայն մատենագիրն հայ: Ճշդութիւն ասեմք, քանզի զոր ինչ Ֆերդուսի 'ի մետասաներորդ դարու զՕրոհակայ պատմէ՝ քաղեալ 'ի հնագոյն փեհլեվի բնագրաց, սակաւ յոյժ տարբերի 'ի բանից Խորենացւոյ: Այսու՝ որպէս և այլովք բազմօք, վարկ ճշմարտապատում հեղինակիս մերոյ մեծապէս հանդիսանայ, որով և ակներև տեսանի հաւատարմութիւն բանից պարսիկ բանաստեղծին: Որոյ՝ յզգեցուցանելն նախնական վիպասանութեանց աշխարհին իւրոյ զձև չափաբերական, 'ի խնդիր է լեալ վաւերական աղբերաց՝ և չէ հեռացեալ 'ի հնագոյն աւանդութեանց: Քանզի այդ առասպել այլազգ աւանդի առ պատմաբանս և առ ժողովուրդն Պարսից (77): Այլ մեր զանց արարեալ զնոքօք՝ ցուցցուք սակաւուք զոր ինչ հայ և պարսիկ մատենագիրքդ զԲիւրասպայ ճառեն: 'Ի սոցանէ յետինս Աբոքոյէ ասէ լինել զՕրոհակ, որ եկաց յաւուրս Ջեմշիդայ՝ չորրորդին 'ի շարս արքայիցն Պարսից 'ի հարստութենէ փեշդադեանց: Օհարմանայն Օրոհակայ պատմելով՝ ասէ Ֆերդուսի, եթէ դրդեալ 'ի Հարամանոյ՝ սպանանէ նախ առաջին զհայր իւր՝ Մերդաս. զկնի որոյ հրապուրեալ 'ի նոյն չարէն՝ զտիպ տարազու խոհակերի զգեցելոյ, զառաջինն ուտել սկսանի միս, զոր առ մահու չափ մեղս ունէին նախնի Պարսիկք: Փոխարէն հեշտութեանցս և պարարելոյ զքիմս արքային՝

(77) Տե՛ս La Perse, par L. Dubeux, p. 27 — 28 և 222.

խնդրէ 'ի նմանէ պարգև, այն է՝ համբուրել զուսս նորա. առ որս ընդ մերձեցուցանելն զշրթունս իւր՝ երկու վիշապք ծնանին՝ ահագինս սուլելով: Թուէր, եթէ վախճան արասցեն գազանքն անարիք կենաց արքային. սակայն Հարամանոյ զկերպարան բժշկի զգեցեալ՝ յանդիման լինի նմա ասելով. չար և ոչ մի ինչ հասցէ քեզ 'ի դոցանէ, եթէ ուղղովք մարդկան մնուցես: Զոր արարեալ՝ գիտաց Զոհակ զխրատ բժշկին ճշմարիտ գոլ: Եւ այսպէս աւուր աւուր զերկուս 'ի բնակչաց աշխարհին սպանանէին 'ի կերակուր վիշապացն, մինչև եւ վիճակ մահուան որդւոցն դարբնի Սպահան քաղաքի, որում անուն էր Կավէ: Եհաս գոյժն մահաբեր յունկս հօրն՝ այն ինչ 'ի դարբնոցի անդ աշխատէր. որ և ելեալ անաի հապճեպով՝ անցանէ ընդ փողոցս քաղաքին, յարուցանելով զբնակիչս ընդդէմ բռնակալութեան Զոհակայ: Ստուարացուցեալ զթիւ համախոհից իւրոց՝ դէմ եդեալ գնայ 'ի Դեմաւենդ կոյս: Մինչ այս մինչ այն գտեալ ածեն զվեշտասանամեայն Ֆրերիդուն, որ 'ի թագստի կայր յահէ Զոհակայ: Կավէ տայ նմա իբրև արքայի՝ զօրս, զէնս և զգանձըս. որ և ձերբակալ արարեալ զբռնաւորն՝ բառնալ հրամայէ զնա 'ի կենաց (78):

---

(78) Տե՛ս Շահ Նամէ: Ոչ նշանակեցաւ ճշդիւ գրքէս Բանաստեղծութեանն Պարսից, քանզի երկու ամօք նախ քան զայս ընթերցեալ էր մեր դիւրեալ Տարեանք, որ չգտաւ առ մեզ 'ի գրելս զայս քննութեան:

Խորենացին զՏրդատ Աժդահակ նմանէ ([79]) քարոզէ Պարսից՝ պատմելով զնմանէ, եթէ 'ի սկզբան անդ թագաւորութեան իւրոյ զբարերարութենէ բուռն հարկանէր այրն. և եթէ հուսկ ուրեմն սպասաւորել սկսան նմա դևք առ 'ի վրիպեցուցանել զնա. և 'ի համբուրելոյ դիւաց զուսս նորա ծնան վիշապք: Նոյնպէս վիշապացեալ Տրդատայ՝ յաճախէ զչարութիւն իւր՝ զմարդիկ 'ի պէսս որովայնի ծախելով: Դակ ապա Հրուդենայ ուժեմն կապեալ զնա սարեօք պղնձիւք՝ տանի 'ի լեառն Դըմբաւընդ. տակայն 'ի Ճանապարհի ննջէ Հրուդէն. և 'ի քարշելն զնա Տրդատայ՝ զարթչի Հրուդէն և կալեալ զնա՝ կապէ յայրի լերինն և զինքն անդրի ընդդէմ նորա հաստատէ: Այս ամդ Տրդատ՝ հնազանդեալ շղթայից իւրոց, և ոչ զօրէ ելանել և ապականել զերկիր ([80]):

Թէև հակիրճ է յոյժ պատմն Խորենացւոյ, սակայն ոչ սքօղի 'ի նմին հնութիւն առասպելին Պարսից՝ պատմելոյ ([81]) 'ի հնոյց աշխարհն, և տարբերու-

---

([79]) Խորեն. Գիրք Ա. Յաղագս առասպելեաց Պարսից: »Ասացեալն 'ի նմանէ Տրդատ Աժդահակայ, ա-Բիւրասպայ նախնի նոցա (Ա Պարսից):«

([80]) Տե՛ս զ'ի վեր անդ եղեալ հատուածն Խորենացւոյ:

([81]) Խորեն.... »և այնոցիկ Տանատար ըէ լուրն գրեալ մեր պաշտօնայոյցանէր, այսօր չելամտէ էնով շարագրեմ պայխառէն«.... (յայտ է 'ի բանիցս, եթէ առ Խորենացւով պատմեալ լինէր առասպելն Պարսից 'ի մէջ հնոյց:)

Թիւն նորին 'ի բանից բանաստեղծին, զոր ընթեր-
ցողն ինքնին դիւրաւ կարէ նկատել։ Զայս միայն
ասացից, եթէ Զոհակ ոստանէւ քարոզի 'ի Մա-
տենին Թագաւորաց, իսկ առ հայ մատենագրին՝
կապեալ յայրի Դըմբաւընդ լերին, անմահ մնայ՝
հնազանդեալ շղթայիցն, և հանգոյն մերոյն Արտա-
ւազդայ և Իբերիացւոյն Ամիրանայ ոչ զօրէ ելանել
և ապականել զերկիր։

Զբիւրասպ Աժդահակ նախնի Պարսից քարոզէ
Խորենացի՝ որպէս վերագոյն ասացաք. որ չէ այդ-
պէս. քանզի պատմաբանք և բանաստեղծն Պարսից՝
հինգերորդ զնա դասեն 'ի շարս Փէշդադեան արքա-
յից։ Թերևս յայտնի 'ի բանս իւր զհետ գնայ
Խորենացին այլ ինչ աւանդութեան՝ ծանօթ եղելոյ
նմա 'ի Քաղդէական մատենից, ոչ ժամանելոց առ
մեզ։ Տարաձայնութիւն է առ պատմաբանս յաղագս
Զոհակայ. ոմանք՝ ընդ որս և Ֆերդուսի, Արա-
բացի 'ի զարմէ Քայումուրս առաջին արքայի Պար-
սից, այլք Ասորի, իսկ բազումք՝ նոյն ինքն Նեբրովթ
զնա գոլ ասեն (82)։ Զորրորդ կարծիք՝ մինչ ցարդ
անծանօթ բանասիրաց, Խորենացւոյն է, որ ոչ
Նեբրովթ, այլ առ նովաւ կեցեալ Պէւոէք Մէն-
տորա զԶոհակ համարի լինել։ Նա այսպէս 'ի մեկ-
նաբանել անդ իւրում զառասպելն պարսկական, զկնի
'ի մէջ բերելոյ զայս կարծիք՝ բուռն հարկանէ

(82) L. Dubeux. p. 222. — Sir John Malcolm, t. I, p. 27. —

Քերթողահայրն մի ըստ միոջէ պարզաբանել զառասպելական նշանակութիւն զրուցոյն զԺոհակայ, որով զհմտութիւն իւր 'ի հնութիւնս նախնի արեւելեան ազգաց ցուցանէ։ Քանզի զանց արարեալ զաւանդութեամբ Պարսից՝ գոյն գործէ յօտարազգի աղբերց հանել և մեկնել զզրոյցս նոցա։ Թէև Քաղդեացի անուանէ Խորենացին զմատեանն առանց որոշելոյ զայն. սակայն յառաջբերեալն 'ի նմանէն՝ 'ի դպրութիւն Յունաց տայ մեզ ակնարկել։ Քանզի ասէ, եթէ «զայս զԿիւրապաղատայ հաւաստի անուն Ճանաչեմ ես՝ Կենտաւրոս Պիւռիդայ 'ի քաղդեականի գտեալ մատենի (83)։« Իսկ Կենտաւրոսս այս՝ որպէս յայտնի է բանասիրաց, նոյն իսկ Պիւռիդն է, զոր ըստ յունական առասպելաց՝ եսպան Պերիփաս 'ի հարսանիս Պիւրիթոոսայ։ Այս կարծիք ամենևին հակառակ գոլով աւանդութեան Պարսից, ոչ կարէ ընդունելի լինել 'ի հնախոյզ գիտնականաց։ Սակայն արժանի է ուշադրութեան այնորիկ վասն, զի՝ որպէս ասացաք, իբրև մատամբ ցուցանէ մեզ զյունականն յարմարանք մնաց յաւանդութիւնս Պարսից. որ և հնարեալ թուի յԱղեքսանդրիա 'ի դպրոցս Նորոց Պղատոնականաց։ Եւ հաստատի այս բանիւք նորին իսկ Խորենացւոյ, որոյ ոչ շատացեալ պատմութեամբ ևեթ պարսկական առասպելին՝ միջամուխ լինի 'ի մեկնութիւն առասպելական նշանակութեան

(83) Խորէն. Գիրք Ա. Յաղագս Պարսից առասպելեաց։

նորին՝ որպէս սովոր էին ասել 'ի դպրոցս Աղեք-սանդրիոյ իմաստասէրք տեղւոյս։ Եւ այսպէս ջղան-ճարի ճարեերարուքեան « Իխուրասպայ պարզաբանելով ասէ․« Սա ոչ քաջութեամբ քան թէ հարստութեամբ զցեղապետութիւն ազգին իւրոյ ունէր՝ հնազանդեալ Սեբրութեայ․ և հասարակաց կենցաղս կամէր ցուցանել ամենեցուն և ասէր՝ ոչինչ իւր առանձին ուրուք պարտ լինել, այլ հասարակաց (84)․ և ամենայն ինչ յայտնի՝ և՛ բան և՛ գործ ․ և 'ի ծածուկ ինչ ոչ խորհէր, այլ զամենայն յանդիման բերէր լեզուով զծածուկս սրտին։ Նոյն զել և զմուտ բարեկամացն, որպէս 'ի տուընջեան՝ նոյնպէս գիշերի սահմանէր։«

Օկնի այսպէս գեղեցիկս որոշելոյ զճշմարիտն յառասպելէն՝ յառաջ մղէ Խորենացին զմեկնութիւն այլոց մասանց պատմութեանն Օոհակայ, զորմէ ասէին դարձեալ, թէ » Տանուտէր ռամկայ օգտաւորելով (Իշխանապետոյ)՝ լինէր համախորհուրդ․ և այս ձևն որոյ պարգևն 'ի նմանէ խնդրեալ՝ համբուրէր զբանն։« Օայս տեղի այսպէս պարզաբանէ մատենագիրն մեր․ »Այլ քանզի աստեղաբանութեամբ հզօր եղեալ՝ յօժարե-

(84) Աղաւաղեն 'ի շարժմանս ուսմանն հրեիւ այժմու Եւրոպացի իմաստասէրք՝ անուանեալքն Communistes, եթէ գիտէին զՕոհանէ՝ նոր հորինեցեալ վարդապետութեան նորեանց Սոկրատեսեանն․ քանզի Օոհանէ զնոյն ուսուցանէր, զոր և նոքա՝ յասելն »Ոչ ինչ իւր առանձին ուրուք պարտ լինել, այլ հասարակաց։«

ցաւ ուսանել զկատարեալ չարութիւնն. և այսք անկարելիք նմա։ Որպէս վերագոյնն ասացաք, սովորութիւն ունէր պատրանաց աղագաւ առ քաղուսմն ոչինչ 'ի ծածուկ գործել. և այնպիսի վերջին և կատարեալ չարութիւն յայտնի ուսանել կարողութիւն ոչ էր. Հնարք այսպիսում ուսմնն դառնութեան, և հնարս և ցաւս ինչ յորովայնի ունել և բաղբաղել չարաչարս, որ ոչ այլով իւիք քան թէ բանիւ իմն և անուամբ սոսկալեաւ բժշկիցի, զոր ունէք վայրապար լսել ոչ է կարողութիւն։ Նոյն այս, որ զսովորեալ չարութիւն նիւթէր, ուսուցանէր նմա 'ի տան և 'ի հրապարակս, անկասկած զգլուխ 'ի վերայ ուսոց Տիւրասպեայ դնելով և խօսելով յականջսն՝ ուսուցանէր զանբարի արուեստն։«

Հուսկ ուրեմն »զգլուխն դնելոյ 'ի վերայ ուսոց Տիւրասպեայ« այսպէս մեկնաբանէ՝ 'ի բաց մերկեալ զզգեստ առասպելական 'ի ճշմարտութենէն, որ ընդնովաւ ծածկի. »Նոքաւ մարդիկ սկսաւ (Տիւրասպ) զոհել դիւաց՝ մինչև տաղտկանալ 'ի նմանէ բազմութեանն և հալածել, և փախչել նմա 'ի նախասացեալ վերին կողմանսն. և 'ի սաստիկ վարելոյն զնա՝ թօթափեցաւ ամբոխ նորա 'ի նմանէ։ Յայս վստահացեալ վարողացն զնա՝ հանգեան աւուրս ինչ զտեղեօքն։ Իսկ Տիւրասպեայ ժողովեալ զցրուեալսն՝ յանկարծօրէն հասանէ 'ի վերայ, վնաս սաստիկ առնելով. այլ յաղթէ բազմութիւնն՝ և փախստական լինի Տիւրասպ։ Նոյն հասեալ սպանա-

նեն զնա մերձ 'ի լեառն, և ընկենուն 'ի վիհ մեծ ծծմբոյ (88)։«

Նոյնպէս գլխաւորէ զբանս իւր «Բերթողահայրն մեր, յորս ճշմարտապատմութիւն նորին, տեղեկութիւն հնութեանց, ճշդութիւն նկարագրութեանց 'ի զարմանս կրթեն զմեզ առաւել քան զյոյժ։ Զինքենէ՞ արդեօք, եթէ յԱղեքսանդրացի իմաստասիրաց առեալ՝ յառաջ բերէ Խորենացին զայս մեկնութիւն, չէ 'ի դիւրագունիցն վճռաբար որոշել. նա՝ բնաւ և չէ իսկ փոյթ ինչ։

Տեսանես, զի իմաստուն պատմաբանն մեր՝ ոչ եթէ վայր 'ի վերոյ առանց քննութեան մուծանէ 'ի մատեան իւր զորմէ ճառէն. այլ զկնի ընդերկար որոճալոյ զայն 'ի միտ իւրում և զսուտն 'ի ճշմարտութենէ որոշելով՝ շօշափելի կացուցանէ զայն առաջի ընթերցողաց։ Եւ եթէ նա զստարաց զրոյցս և զաւանդութիւնս այսպէս քրքրէ, որքան ևս առաւել զմերն պարտ էր նմա՝ զմիպասանին ասացից զբան, »Մտացն ծածկեալ կշռեսցէ«։ Այլ զայսմանէ յիւրում տեղւոջ լիով ճառեսցուք։ Իսկ առ ժամս ոչ աւելորդ դատիմ հարևանցի բաղդատել զերգս մերոց վիպասանաց ընդ Պարսիցն, և ցուցանել սակաւուք զյատ-

(88) «Քանզի արդարև հրաբուխ թուի լինել լեառն Դը-մաւէնդ, որ և ապացուցանէ ծծմբովն, զոր գտանեն առ ստորոտով նորին։ Տե՛ս La Perse, par L. Dubeux, եր. 27։

կութիւնս նախնական վիպասանութեանց ազգացդ երկոցունց։

Ոգի և ընդածին յատկութիւնք որևէ ազգի՝ մանաւանդ նախնականի, առաւելապէս յազգային նորա յերգս տեսանի տպաւորեալ։ Զայս իմն նաև զՄարսից և զՀայոց։ Վասնզի 'ի քննել մեր ուշադրութեամբ զզրոյցս Արեաց զառաջին թագաւորաց նոցա, նկատեմք 'ի նոսին զքերթուածս երևակայութեան և մտաց նոցա առ հրաշալին առաւել քան առ բնականն։ Եւ այս ոչ միայն 'ի նկարագիրս արկածից, այլև յոլով անգամ յամբողջ պատմութիւնս հարիւրամէից և միջոցաց ժամանակի՝ մանաւանդ հընագունին։ Զհաստատութիւն ասացելոցս նոյն իսկ վէպք Մարսից ցուցանեն մեզ բացերևակի։ Վասնզի որ ինչ 'ի նոսին պատմի զարքայիցն՝ Վայուամուրսայ, Զեմշիդայ, Զոհակայ, Ափրիդունայ և այլոց 'ի հարստութենէն Փէշդադեանց ([86]), զառասպելական յինքեան պարունակէ զնշանակութիւն, և այն՝ վերաբերեալ ոչ առ որոշեալ անձինս յիշեալ առասպելեալ թագաւորացդ, այլ առ ողջոյն շրջանս ժամանակաց, յորոց յընթացս ազգն Արեաց 'ի մասին քաղաքականութեան սակաւ առ սակաւ հնարեալ և սեպհականեալ է անձին զայլևայլ գիւտս առ 'ի լաւացուցանել զիւր վիճակ քաղաքական։ Յաւել առ այս և զանհաւատալին զայն շրջան դարուց, յորս մէն մի 'ի նախկին թագաւորաց Մարսից տի-

([86]) Տես Փէրդուսի 'ի Սահնամէն Թագաւորաց։

րապետեն՝ Ջեմշիդ՝ զեօթնհարիւր ամ, Զոհակ՝ զհազար, Աֆրիդուն՝ զհինգհարիւր և Մինուչեհր, զհարիւր քսան ամ։ Բայց կշռադատեալ 'ի մտի զհանգամանս զայդոսիկ, ոչ անտեղի գտցես զմերս կարծիք, այն ինքն է՝ եթէ զոր ինչ վիպասանք Պարսից զառաջին Թագաւորաց իւրեանց ճառեն, նա՝ և առաջին իսկ Թագաւորք նոցին, բուն առասպելք են, ընդ որովք ծածկի ճշմարտութիւն իրացն եղելոց, յորս և մտադիր ընթերցողն որոշել կարէ զայլաբանականն 'ի բնականէն, որպէս և Խորենացին առնէ 'ի պարզաբանել իւրում զԲիւրասպի Աժդահակայ զպատմութիւն։ Սէր առ հրաշալիսն, չափազանց թուիչ հրաբորբոք երևակայութեան, գեղապաճոյճ սեթևեթք սովորական արկածից, մանկական յափշտակութիւն մտաց, որ զբնական իրս գերբնականաւն իմանալ նկրտի, ահա քեզ յատկութիւնք, յորս Պարսիկն անցանէ զանցանէ զամենայն արևելեան ազգօք։ Եւ այս ոչ միայն 'ի նախնական դարուց պատմութիւնս ազգին իւրոյ· այլև 'ի ճառելն զանցս յետին ժամանակաց, որպէս տեսանել ունիս 'ի բանս նոցա զԱղեքսանդրէ Մակեդոնացւոյ, Իսքանդէր առ նոսա կոչեցելոյ։ Այսպէս ահա Թագաւորք Պարսից՝ մերկացեալ բնաւին զմարդկութիւն իւրեանց, յանդիման լինին մեզ՝ զգեցեալ զկերպարանս մտացածին էակաց, կամ թէ լաւ ևս ասել՝ առասպելական անձանց։

Սակայն ոչ է այդպէս պատմութիւն առաջին Հայկազուն Թագաւորաց մերոց՝ թէ և 2107 ամօք նախ

քան զՔրիստոս սկզբնաւորեալ տեսանեմք զայն։ Վիպասանք մեր կամ Երգիչք, որ զգործս նախահաւուն մերոյ Հայկայ և յաջորդաց նորուն ասել ախորժեցան յերգս իւրեանց, որպէս 'ի նշխարաց առ մեզ հասելոց 'ի Պատմութեան Խորենացւոյ տեսանեմք, յորոց վերայ սա յետինս հիմնեալ կառուցանէ զազգաբանութիւն մեր — ապաքէն ոչ բերեն զնմանութիւն Պարսից վիպասանաց։ Եթէ Փէշդադեան արքայք առասպելք են միանգամայն, Հայկազունք մեր ընդհակառակն նախ առաջին մարդիկ են մեզ նման, որոց գործք նոցա ոչ ելանեն ըստ սահման բնական և սովորական գործոց մարդկան։ Եւ արդարև պատմութիւն նախնւոյն Հայկայ, որդւոց և թոռանց նորա և այլոց՝ ոչ ինչ յինքեան պարունակէն յանհաւատալեացն. Թէ և դուն ուրեք այն՝ տեսանեմք և 'ի բանս մերոց վիպասանաց զրոյցս առասպելախառնս։ 'Ի բաց առեալ զպատմութիւն Վահագնի (զոր յայլում վայրի մանր քննեսցուք), այլ ամենայն երգք վիպասանաց մերոց մեծապէս յինքեանս բերեն զճշմարտութեան կերպարան։

Երկոքին ազգքս դրացիք՝ Հայն և Պարսիկն, տիրապէս զանազանին 'ի միմեանց։ Որքան անսասան է երևակայութիւն յետնոյն և սիրող հրաշալեաց, այնքան ճիշդ է ընդհակառակն մէն մի յըմբռնմանց Հայոյն, որ քան զամենայն՝ նախամեծար դասէ զբնականն և զճշմարիտն։ Զայսոսիկ յատկութիւնս ազգի մերոյ տեսանեմք մանաւանդ 'ի հնագոյն երգս վիպասանաց մերոց. Թողից ասել զճշմարտասիրու-

թիւն Հայ պատմաբանից, որք ոչ միայն զայլոց ա-
զանց պատմութիւն անաչառ մտօք աւանդեն մեզ, այլ
և մերոյ ազգիս գործք՝ թէ արժանի իցէ այն և
թէ անարժան, առանց սքօղելոյ՝ կամ յանչափն ծրկ-
տեցուցանելոյ և կամ նուազեցուցանելոյ զլաւութիւն
կամ զթերութիւն նորա, ճշդիւ պատկերացուցանեն
զայն առաջի ընթերցողաց։

Գ.

Անցեալ աստի յերրորդ կարգ երգոց վիպասանաց,
յորս զԱսորեստանեայց են բանք, տեսցուք և 'ի նո-
սին զփոյթ հնոցն մերոց՝ յաւերժացուցանել զյիշա-
տակ տիկնոջն Շամիրամայ, մեծամեծ շինութեանց
եղելոյ պատճառ 'ի նահանգին Վասպուրականի, որ
և ընդ լծով Ասորոց արար զՀայաստանեայս։ 'Ի
բաց թողեալ զճշմարիտ կամ զմտացածին լինելն
պատմութեան Շամիրամայ և զլինելութիւն իսկ տիկ-
նոջն, զորմէ այլևայլ կարծիք են առ բանասերս
Եւրոպիոյ, 'ի մէջ բերցուք զարժանին ուշադրու-
թեան իմաստուն հնախուզից զբանս Խորենացւոյ,
յորս աւանդի կարծիք զՇամիրամայ՝ տարբեր ամե-
նևին 'ի Յոյն և Հռովմայեցի մատենագրացն։ Որ
'ի սոցանէն պատմի զՇամիրամայ քաջայայտ է ամե-
նեցուն. քանզի ծնունդ սորա և սնունդ, նստելն յա-
թոռ թագաւորութեան զկնի մահուան առն իւրոյ
Նինոսի. գնալն ընդդէմ Արաց. անցանելն յԵգիպ-
տոս, ուր և հարցանելն զպատգամախօսն Ամոնեայ.

դարձ նորա յԱսորիս զկնի պատերազմին Հնդկաց և յառնելն ընդդէմ նորա որդւոյ իւրոյ Նինուասայ. անհետ լինելն կամ ըստ աւասպելաբանից՝ վերափոխելն ՚ի կարգս աստուածոց, իսկ ըստ այլոց՝ յաղաւնի փոխակերպելն նորա — այս ամենայն յայտնի է ծանօթիցն հնագոյն պատմութեան արևելեան ազգաց ([87]). Բայց առաւել զարմանալին այն է, որ սոքա և ոչ մի ինչ պատմեն զգալոյն Շամիրամայ ՚ի Հայս, զպատերազմէն նորա և զմեծամեծ շինութեանց, որոց հետք մինչ ցայսօր ժամանակի կան և մնան ՚ի կողմանս Վանայ։ Թէ և սոցա անփոյթ է արարեալ զայսու ամենայնիւ, սակայն Խորենացին՝ զհետ գնալով քաղդէական աւանդութեանց և մանաւանդ երգոցն վիպասանաց աշխարհիս մերոյ, հաւանական դատի՝ զյունական և զհռովմէական պատմաբանիւք անցեալ, տալ մեզ զպատմութիւն Շամիրամայ, որ բազմօք ՚ի նոցանէն զանազանի։ Վասնզի Շամիրամ զկնի հալածական առնելոյ ՚ի Կրետէ զՆինոս՝ պատգամաւորս առաքէ ՚ի Հայս առ Արայ՝ գալ առնուլ զնա կնութեան և թագաւորել ՚ի վերայ Ասորեստանեայց։ Որում ոչ հաւանեալ արքային Հայոց, ելանէ գայ տիկինն ՚ի Հայս ընդդէմ նորա զօրու ծանու. և ՚ի լինել պատերազմի՝ սպանանի Արայ և երկիր տէրութեան նորա մնայ ընդ լծով Ասորոց։ Զկնի որոյ բուռն հարկանէ Շամիրամ զմեծամեծ շինութեանց. շինէ և ապարանս հոյակապս,

---

([87]) Դիոդոր. Սիկ. Գիրք բ. հատ. դ—ի։

յորում զամառնայինն եղանակ անցուցանել ախոր-ժեր։ Այլ որովհետեւ սա ամի ամի ելանէր 'ի Հայս, ամէն իրի կողմնապետ Թողոյր Ասորեստանի զԱրա-ցէն Զրադաշտ, որոյ ընդհուպ բռնացեալ տիրել խորհեցաւ 'ի վերայ ամենայնի։ Զչարեալ ընդ այս Շամիրամայ՝ գնաց ընդդէմ նորա պատերազ-մաւ. սակայն ոչ կարացեալ զդէմ ունել Արա-ցւոյն՝ փախստական անկանի 'ի Հայս, ուր հետամուտ եղեալ նմա Նինուասայ, սպանանէ զմայրն եւ ինքն յանձն թագաւորութեան բազմի։ Զայսօսիկ Խո-րենացի ([88])։

Ախրագործութեանց Շամիրամայ՝ 'ի Հայս գոր-ծելոց, պարտ էր մտանել յերգս վիպասանաց. քան-զի վերոյիշեալ պատմութիւնն Թէեւ Քերթողա-հայրն յառաջբերեալ ասէ 'ի գիրս Մար Աբասայ 'ի քաղդեական մատենից, սակայն ըստ մերումս կար-ծեաց՝ չէն անխառն 'ի հայ զրուցաց եւ աւանդու-թեանց։ Մի՝ զի մատենագիրն մեր ինքնին վկայէ այսմ հատուածովք՝ քաղելովք յերգոց վիպասանաց. եւ երկրորդ՝ զի որպէս Մար Աբաս խոստովան լի-նի՝ յիշեալն 'ի նմանէ քաղդեական մատեան պարու-նակէր յինքեան նաեւ զերգս դուսանականին ([89]) աշ-խարհին Հայոց։ Զայս կարծիք վաւերական ցուց-ցէ քեզ պատմութիւն վախճանին Շամիրամայ, զոր Խորենացին 'ի վիպաց առեալ հաղորդէ մեզ այս-

---

([88]) Խորէն. Գիրք Ա. Գլ. ԺԵ, ԺԶ, ԺԷ։
([89]) Նոյն. Գիրք Ա. Գլ. ԺԴ։

պէս.« Ասա՛ ուրեմն (՚ի Հայս) զմահ ասել (երգչաց) Շամիրամայ եւ զհետեւակ փախուստն. եւ զպասքումն, եւ զխորշ ջրոյն եւ զարբումն. այլեւ ՚ի մօտ հասանել սուսերաւորաց եւ դշխոյութիւն ՚ի ծով, եւ քան ՚ի նմանէ — »Արձա՛ն Շամիրամայ ՚ի ծով (90):«

»Արձանն Շամիրամայ ՚ի ծով.« ահա քեզ քան վիպասանին, որոյ անուն եւ նոյն իսկ Տիգրան՝ նման ուլանց տիկնոջն Ասորեստանի՝ յանդգնութս ժամանակի խորասոյզ անհետ եղեն վասն մեր . . .

»Արձանն Շամիրամայ ՚ի ծով.« Թուի ինձ մնացս աչօք տեսանել զ՚ի հնոցն մերոց ոգեալ նկարագիր փախստեան Թագուհւոյն մեծի, որոյ յանհնարս մնեալ՝ յոտիցն Թեթեւութիւն լինի ապաստան, եւ յանցանելն ընդ խորշակահար ընդ դաշտս՝ պապակի լեզու նորա ՚ի տապոյ. զովացուցանել ցանկայ զկոկորդն ջրովն քաղցրութեան, որ կարկաջասահ անցանէ ընդ քարինս. եւ մինչ նա զծարաւն բժշկէր՝ մօտ եկեալ հասանեն սուսերաւորք. սակայն Ձեպ տայ ոտից իւրոց Թալկացելոց տիկինն՝ հասանէ յեզր ծովուն Վանայ, ՚ի բաց կորզէ ՚ի պարանոցէն զուլունս, ընկենու զուլունս ՚ի ծով, եւ ինքն իսկ ծովամոյն կարծել կամի զկեանս... այն ինչ յանկարծ... ո՛վ սքանչելեացս... ՚ի քար դառնայ յուսակտուրն Թագուհի.

»Շամիրամ քար առաջին տան զԱսորէ (91):«

---

(90) Մովս. գիրք Ա. գլ. ԺԸ։

(91) Խորէն. գիրք Ա. գլ. ԺԸ։

Նմանութիւնս այս յաղագս բանականաց Զրադաշտի յԱսորիս, պատերազմին ընդդէմ Նորա Շամիրամայ և Մանհուան յետնոյս, ոչ միայն անմիաբան է որոց Յոյնք և զկնի նոցա Հռովմայեցիք պատմեն զտիկնոջէն մեծէ. այլև անծանօթ նոցա բոլորովին։ Զայս տարբերութիւն նոյնպէս նկատէ գիտնական Գաղղիացին Ռէնոյ 'ի գեղեցիկ քննութեան իւրում յաղագս Զրադաշտի, որ մեծաւ մտադիւրութեամբ զննէ զայս խնդիր և զկարծիս իւր զԽորենացւոյն յարգանօք յայտնէ (92)։ Սակայն այս բուն պատմութեանական խնդիր գոլով, ոչ մտանէ 'ի կարգ յառաջիկայ երկասիրութեանս. յոյր սակս և մեք զանց առնացուք զնովաւ՝ մինչ յայլում վայրի առանձինն զպատմութենէ Քերթողահօրն հասցէ մեզ ճառել։

Նոյնպէս արժանի է ուշադրութեան և՛ առաջին մասն պատմութեան Շամիրամայ առ Խորենացւոյ, զորմէ չիք ամենևին յիշատակութիւն առ նախկին արևմտեան մատենագիրս, այն ինքն է՝ հրաշալի շինութիւնք Թագուհւոյն Ասորեստանեայց 'ի կողմանս Վանայ, նկարագրեալք առ մերովք ժամանակօք 'ի Շուլց գիտնականէն (93), և պատերազմն նորա ընդ-

(92) J. Reynaud.—*Zoroastre*, § 2. »Nous venons de voir qu'indépendamment de Justin, elle (cette tradition) est consignée dans Moïse de Khorène; et *le témoignage de ce savant, qui avait étudié et visité non seulement le monde grec et romain, mais l'Orient, est d'un grand prix*, lors même qu'on le réduirait à n'être que l'écho des idées de son temps.«

(93) Տե՛ս Journal Asiatique, 1840, Avril, Mai, Juin.

դէմ Արայի։ Այդ ամենայն յերգոց վիպասանաց քաղեալ երևի և մուծեալ 'ի քաղդեացի մատեանն, ուստի հանեալ է Մար Աբասայ զպատմութիւն Հայոց։ Քանզի թէև բազմօք յեղյեղեալ է վէպն մեր՝ անցանելով նախ առաջին 'ի մատեանն քաղդեացի, յետոյ հրամանաւ մեծին Աղեքսանդրի 'ի յոյն լեզու փոխեալ, իսկ հուսկ ուրեմն հրամանաւ Վաղարշակայ հանեալ անտի բազմահմուտ Ասորւոյն և 'ի նորոյ հայացուցեալ 'ի Քերթողահօրէն մերմէ․ սակայն ոչ միանգամայն անհետանայ 'ի նմին ոգի և յատկութիւն հայ աւանդութեանն։ Ստադիր ընթերցանութիւն յետագայ հատուածիս ակներև ցուցցէ զճշմարտութիւն բանից մերոց․ քանզի ասէ Խորենացի․

«Բայց վաւաշն այն և բորբորիտն Շամիրամ՝ 'ի բազում ամաց լուեալ զգեղեցկութենէ նորա (Արայի), ցանկայր հասանել... և 'ի ոչ հաւանել Արայի՝ 'ի սաստիկ ցասմամն լեալ Շամիրամայ, գայ հասանէ յերկիրն Հայոց 'ի վերայ Արայի 'ի դաշտն Արայի, որ և յանուն նորա անուանեալ Այրարատ։ Եւ 'ի լինել ճակատուն պատուէր տայ զօրապետաց իւրոց, թէ դէպ լինիցի՝ հնարել ապրեցուցանել զԱրայն։ Իսկ 'ի լինել մարտին՝ հարկանի զօրն Արայի, մեռանի Արայ 'ի պատերազմին 'ի մանկանցն Շամիրամայ։ Դիակապուտս առաքէ տիկինն յետ յաղթութեանն 'ի տեղի ճակատուն՝ խնդրել 'ի մէջ դիականցն անկելոց զըղձալին իւր և զտարփածուն։ Գտանեն զԱրայն մեռեալ 'ի մէջ քաջամա-

րտկացն. և հրամայէ դնել զնա 'ի վերնատանն ապարանից։

«Իսկ 'ի գրգռել միւսանգամ զօրացն Հայոց 'ի մարտ պատերազմի ընդ ախոյենոջն Շամիրամայ՝ քինախնդիր լինել մահուան Արայի, ասէ. «Հրամայեցի աստուածոցն իմոց լիզուլ զվէրս նորա, և կենդանասցի։« Միանգամայն և ակն ունէր դիւթութեամբ վհկութեան իւրոյ կենդանացուցանել զԱրայ՝ ցնորեալ 'ի տռփական ցանկութեանն։ Այլ իբրև նեխեցաւ դի նորա՝ հրամայեաց ընկենուլ 'ի վիհ մեծ և ծածկել. զմի ոմն 'ի հոմանեաց իւրոց զարդարեալ ունելով 'ի ծածուկ, և համբաւէ զնմանէ այսպէս. «Լիզեալ աստուածոցն զԱրայ և կենդանացուցեալ, լցին զփափագ մեր և զհեշտութիւն. վասն որոյ առաւել յայսմհետէ պաշտելիք են 'ի մէնջ և փառաւորեալք իբրև հեշտացուցիչք և կամակատարք։« Կանգնէ և նոր իմն պատկեր յանուն դիւաց և մեծապէս զոհիւք պատուէ. ցուցանելով ամենեցուն, թէ այս զօրութիւն աստուածոցն կենդանացուցին զԱրայ։ Այլ այսպէս համբաւեալ զնմանէ 'ի վերայ երկրիս Հայոց, և հաւանեցուցեալ զամենեսեան, դադարեցուցանէ զխազմն (94)։«

Յայսոսիկ 'ի բանս արձագանգ Արգոյն վիպասանաց՝ թէև 'ի խորին հնութեան անդ հնչեցեալ, ազդոյ իմն եղանակաւ լինի լսելի. քանզի այս ամենայն մանրամասն հանգամանք պատերազմին և մահ-

(94) Խորէն. Գիրք Ա. Գլ. ԺԵ։

ուսն Ս՚րայի, և կեղծեալըն 'ի Շամիրամայ դարձ արքային Հայոց 'ի կեանս, և հաւանեալըն Հայոց կենդանանալոյն Ս՚րայի աստուածոցն լիզելով զդի նորա, ոչ այլ ինչ են բայց եթէ բուն կարծիք և առածհնոցն մերոյ աշխարհիս, յորս հեթանոսական սովորութիւնք մերոցն՝ բանաստեղծական ոգւով զարդարեալք, երգեալ և աւանդեալ լինէին 'ի վիպասանաց։ Ս՚անաւանդ վերադառնալըն Ս՚րայի 'ի կեանս՝ արժանի է մտադիր քննութեան, որ արդարև զհայութիւն աւանդութեանն ցուցանէ։ Վ՚անզի գոյութիւն աստուածոց՝ լիզողաց զվէրս անկելոց 'ի պատերազմի և այնու կենդանութիւն հաղորդողաց սպանելոցն, թուի լինել մի 'ի մասանց հաւատոյ նախնեաց մերոց 'ի հեթանոսութեան անդ։ Ս՚ռ մատենագիրս մեր տեսանեմք ուրեք ուրեք 'ի կիր արկեալ զբառս Յարալէզ (95), որ մին 'ի բնիկ աստուածոց Հայոց երևի լինել։ Ս՚տուգութիւն անուանս ակնարկել տայ մեզ յայն ինչ, զոր յարալէզք առնէին ընդ դիական Ս՚րայի. այսինքն՝ անդադար լիզելով՝ կենդանացուցանէին զգանեալսն։ Նաև զի մի 'ի հաւատալեաց մասանց էր այս կարծիք առ հինսն մեր՝ յայտ անտի ևս է, զի որ ինչ զՍ՚րայէ պատմի չէ միակ ևեթ յիշատակութիւն առ մատենագիրս մեր։ Ս՚ռ Փաւս-

(95) Ա՛նուս այլ ձևք բառիս են Արալէզ և Առլէզ. մեզ թուէր հաւանական բուն յարալէզն չէ, որպէս և ստուգաբանութիւն նորին՝ զոր տուաք, ցուցանէ. և ոչ եթէ Արայի լիզող՝ որպէս մեկնէ Նոր Բառագիրքն։

տոսի Բիւզանդացւոյ գտանեմք զնոյնանման աւանդութիւն նաև զզօրավարէն Հայոց Մուշեղէ, զորմէ առ Թագաւորն մեր Վարազդատ քսիս մատուցեալ՝ Բատ Սահառունի դայեակ արքային՝ յինքն յափշտակել կամելով զսպարապետութիւն աշխարհիս, յարեէ արկ զնա։ Եւ այս են բանք Բիւզանդացւոյն.

«Եւ եղև իբրև տարան զմարմին սպարապետին Մուշեղի ՚ի տուն իւր առ ընտանիս իւր, ոչ հաւատային ընտանիք նորա մահուն նորա, թէպէտև տեսանէին զգլուխ նորուն զատ ՚ի մարմնոյն անտի։ Զի ասէին. «Բազում յանթիւ ճակատ մտեալ էր, և վէր երբէք չէր առեալ. ոչ նետ մի դիպեցաւ երբէք, և ոչ այլոց՝ զինու խոցեալ է զդա։ »Նաև կէսք յառնելոյ ակն ունէին նմա. մինչև զգլուխն անդէն ՚ի կոճեղն կարեալ կցեցին, և հանին եդին ՚ի տանիսն աշտարակի միոյ. ասէին թէ վասն զի այր քաջ էր, »Արալէզք իջանեն և յարուցանեն զդա։« Պահապան կային և ակն ունէին յառնելոյ՝ մինչև նեխեցաւ մարմինն։ Ապա իջուցին յաշտարակէ անտի, և լացին և թաղեցին զնա որպէս օրէն էր (96)։

Ըստ առալէզք կամ յարալէզք զնոյն առնեն ընդ դիոյն Մուշեղի, զոր ինչ Արալէզք ընդ Արային. և ոչ միայն այս, այլ և ամենայն հանգամանք նախկին սովորութեանս նոյն են յերկոսին դէպսդ։ Քանզի

(96) Փաւստոս Բիւզանդ. Պատմ. Հայոց, Վենետիկ, 1832. Դպրութիւն Ե. գլ. լզ։

և՛ առ Խորենացւոյն և՛ առ Փաւստոսի գրքիս սպա-
նելոցն հանեն՝ զԱ՛րայեն ՚ի [illegible], իսկ
զՄ՛ուշեղին ՚ի [illegible]։ անդ [illegible]
լեզուն, ասա՝ [illegible]։ Յաւելու Բիւզանդացին, ե-
թէ յառնելոյ ակն ունէին նմա (Մ՛ուշեղի), մինչև
զգլուխն անդէն ՚ի կոճերն կարեալ կցեցին և հա-
նին եդին ՚ի տանիսն աշտարակի միոյ։ ասէին, թէ
վասնզի այր քաջ էր, «Ա՛ռլեզք իջանեն և յարու-
ցանեն զդա»։ Ը՛նտանիքն ակն ունէին յարութեան
սպանելոյն, ակն ունէին, եթէ առլեզք իջանեն և
յարուցանեն զնա։ Ա՛պա ուրեմն այս էր մասն ինչ
հաւատոյ առ այնոսիկ, որք ակն ունէին միջնորդու-
թեամբ աստուածոց յարուցեալ տեսանել զսպան-
եալս ՚ի պատերազմի, և այն՝ [illegible] և [illegible]
ևեթ, և ո՛չ [illegible]։

Ե՛թէ ճշմարիտ է այս, ուրեմն որ զԱ՛րայէ պատ-
մի ՚ի վերոյիշեալ բանս Խորենացւոյն՝ բնիկ հայ-
կական աւանդութիւն է, և ոչ եթէ խօսք քաղդէա-
ցի պատմաբանից. և ոչ միայն հայկական աւանդու-
թիւն, այլև սեպհական ծնունդ մտաց դիցաբանացն
մերոց հնոց՝ մուծեալ ՚ի [illegible] եղեալ ՚ի քաղ-
դէացի մատեանն։

Ա՛յսու ևեթ հնարաւոր լինի իմանալ զայն մեծ
տարբերութիւն, զոր առ Յոյն, Հռովմայեցի և Հայ
մատենագիրս տեսանեմք ՚ի հաղորդելն ամենեցուն
նոցա զպատմութիւն Շամիրամայ։ Պատմաբանք եր-
կոցուն առաջին ազգացդ զհետ գնան աւանդութեան,
որ գուցէ առ Պարսիկս ընկալեալ էր ընդհանրա-

պէս (97)․ իսկ Հայք կամ լաւ ևս ասել՝ վիպասանք մեր առասել հաւանական համարեցան զոր ինչ յաշխարհի ուրեմն և առ դրացի Ասորիս պատմիւր, ասել։

Օ այս այսպէս եղեալ՝ գուն գործեսցուք մեկնաբանել 'ի հարևանցի և զայն մթին տեղի 'ի գիրս Հասարակապետութեան Պղատոնի, ուր սա 'ի մէջ բերէ զառասպելն Էռա հայոյն։ Այս խնդիր մինչ ցայս վայր ժամանակի անլուծանելի մնայ․ քանզի և՛ հին և՛ նոր գիտնականք գոգցես ընդ խարխափս գնան 'ի քննելն ուրեմն զայն, ոչ ինչ առել կարելով ստուգիւ, որ արժանի իցէ հաւատալոյ։ Թուի մեզ, եթէ աւանդութեամբ հնոցն մերոց մարթ է պարզաբանել զկնշեալ առասպելն՝ առ Պղատոնի եղեալ։ Սակայն նախ քան զառաջարկելն յաղագս խնդրոյս զմեր կարծիքս, կարևոր դատիմք բերել աստ զբանս յոյն փիլիսոփային առ 'ի կատարեալ խելամտութիւն ընթերցողաց զոր հանդերձեալս եմք ասել։ Եւ ահա այս ինչ պարունակի 'ի նոսին․

«Ոչ է այս զրոյցն Ալկինոյեայ, զորոյ հանդերձեալ եմ ճառել, այլ պատմութիւն առն քաջասրտի՝ Հայոյն ասեմ Էռայ, ծնեցելոյն 'ի Պամփիւլիա։ Սպանեալ սա 'ի պատերազմի․ զկնի տասն աւուր 'ի վերայ անցանելոյ՝ այնինչ բաւականին զնեխեալ դիակունս անկելոցն ընդ նմին 'ի պատերազմի, զնորայն

---

(97) Ափեոնեաս Ակնէդացի 'ի դէպանս Պղատոնի հանեալ առէ զէար պատմութեան, յորմէ և Պրոկղոս Անէլէ․ առնուզոր ինչ զՀայրանայ։

գտին անվթողջ և անխախտ։ Առեալ տանէին զնա 'ի տուն առ 'ի դիահման յուղարկել նմա. և յերկոտասաներորդումն աւուր մինչդեռ եդեալ կայր 'ի խարուկի՝ վերադարձաւ 'ի կենաց և պատմել սկսաւ զանցդէպսն....«

»Առասպելս այս՝ յաւելու Պղատոն, զբանս առ Գլաւկոն դարձուցեալ, պահպանեցաւ յանյուշութենէ, որ և կարէ զմեզ ևս պահպանել 'ի կորըստենէ, եթէ միայն հաւատասցուք նմա. այսուհետև ողջամբ անցցուք ընդ գետն Լեթէ, և անարատ պահեսցուք զհոգի մեր յամենայն ապականութենէ (98)։«

Գաղղիացի իմաստասէրն Կուզէն՝ Թարգմանիչ գործոց Պղատոնի, ընդ նմին և գոգցես ամենայն Եւրոպացի գիտնականք, 'ի վարանս անկանին՝ ոչ գիտելով զինչ ասել զծագմանէ առասպելիս։ Տարակուսանք իմաստասիրիս յայտնեալ տեսանի 'ի ծա-

(98) Oeuvres Complètes de Platon, trad. par V. Cousin, Paris, tome X. p. 279—295. » Ce n'est point le récit d'Alcinoüs que je vais vous rapporter, mais celui d'un homme de cœur, Er l'Arménien, originaire de Pamphylie. Il avait été tué dans une bataille: dix jours après, comme on enlevait les cadavres déjà défigurés de ceux qui été tombés avec lui, le sien fut trouvé sain et entier; on le porta chez lui pour faire ses funérailles, et le douzième jour, lorsqu'il était sur le bûcher, il revécut et raconta ce qu'il avait vu dans l'autre vie.—»Ce mythe, mon cher Glaucon, a été préservé de l'oubli, et il peut nous préserver nous-mêmes de notre perte si nous y ajoutons foi; nous passerons heureusement le fleuve Léthé, et nous maintiendrons notre âme pure de toute souillure. « —

նօթաքանութիւնս նորա առ յիշեալ Թարգմանութիւնս Պղատոնի, որ և յայս բովանդակին. »Որ ինչ առ Սողոնէն հայի՝ զայս ինչ կարծել պարտ է, եթէ նման առասպելեացն Պռոկղեայ և Փէդոնի, շինեալ թուի այն 'ի վերայ հիման, զոր չէ հնարեալ Պղատոնի, այլ փոփոխեալ կամ յարմարեալ արդարև։ Թէև չգիտեմ զիսկութիւն հիման առասպելին, սակայն և ոչ ժխտող կամիմ լինել գոյութեան նորուն. գուցէ Պղատոնի ժողովեալ է զայն 'ի ճանապարհորդութիւնս իւր զկողմամբք Արևելից։ Սակայն հանգամանք ժամանակի և տեղւոյ խառն գոլով յոյժ, միանգամայն անհնարին գործեն առաջարկել զայսմանէ որևէ կարծիք։ Ամին իրի ոչ դանդաղիմ 'ի մերժելոյ զմեկնութիւն յետին մատենագրաց, որպիսիք են Կղեմէս (Յաճախապատ. Է.) և Եւսեբիոս (Պատրաստ. աւետարան. ժԲ.), որք 'ի Նոհոյն տեսանել կամին զՕրոպողը. և 'ի հաստատութիւն կարծեաց իւրեանց յառաջ բերեն զսկիզբն միոյ 'ի գրոց իմաստնոյս այսորիկ, որ անվաւեր երևի լինել, որոյ և աղբիւր ապաքէն լինել պիտի սոյն այս տեղի գրոցն Պղատոնի։ Սովորութիւն էր առ Աղեքսանդրացի՝ թէ՛ քրիստոնեայ և թէ՛ հեթանոս փիլիսոփայս, զիմաստութիւնն Պղատոնի առ Մովսէս յարաբերել, ոմանք՝ Հրէից, միւսք՝ Եգիպտացւոց, իսկ այլք Պարսից ընծայեին զայն (99)։«

(99) Նոյն. Թարգմանութիւն Պղատոնի, հատ. Ժ. եր. 377—78։ »Quand au mythe en lui-même, il est probable que, com-

Նայսու և եթէ գլխաւորէ իմաստասէրն Գաղղիացի զխոհեմ տարակուսանս իւր, յորոյ 'ի լուծումն ձեռնամուխ լինել համարձակիմք՝ 'ի նպաստ անձին կոչելով զհնագոյն աւանդութիւնս հնոյն Հայաստանի. միայն եթէ յաջողեսցի այդ ձեռնարկութիւն և տացի մեզ հնութեամբ մերոյ աշխարհիս՝ լոյս գտանեալ աղօտափայլ շողացուցանել 'ի վերայ խաւարին խնդրոյդ։

«Նախ առաջին՝ տեսցուք զինչ բովանդակի առասպելն 'ի Պղատոնէ պատմեալ. »Հայ ոմն քաջասիրտ՝ Էրու անուն, սպանանի 'ի պատերազմի. գտեալ զդի նորա անխախտ 'ի մէջ անկելոցն՝ տանին 'ի տուն իւր. և հանեն 'ի խարոյկ. մինչդեռ եդեալ կայր 'ի խարուկի, յառնէ և պատմէ զհանդերձեալսն։«

---

me celui du *Gorgias* et celui du *Phédon*, il repose sur une donnée première que Platon n'a pas faite, mais qu'il aura librement arrangée. J'ignore quelle est cette donnée, mais j'en admets l'existence, et il est même vraisemblable que Platon l'aura receuillie dans ses courses du côté de l'Orient. Mais les circonstances de temps et de lieu sont ici tellement indéterminées, qu'il est impossible de se livrer à aucune conjecture raisonable à cet égard. Je suis donc loin d'admettre les interprétations d'écrivains postérieurs, comme Clément (*Stromat.* V) et Eusèbe (*Præpar. evang.* XIII), qui voient dans Er l'arménien, Zoroastre, et qui citent à l'appui de leurs conjectures le commencement d'un livre de ce sage, livre évidemment apocryphe, et dont la source aura été précisément ce même passage de Platon. C'était un système pour les philosophes alexandrins, chrétiens ou païens, de rapporter la sagesse de Platon à l'Orient, les un à la Judée, les autres à l'Egypte ou à la Perse.«

Զայսոսիկ բանս դարձեալ համառօտեալ՝ գտցուք ’ի նոսին զայս իմաստ. «Քաջք՝ անկեալք ’ի պատերազմի, յառնեն:»

Խնդրելի է այժմ, եթէ առ որում ’ի հնագոյն ազգաց Ասիոյ գտանի այդ վարդապետութիւն. որքան ես գիտեմ, բաց ’ի Հայոց և ոչ առ ուրուք ’ի նոցանէ: Իսկ առ Հայս քարոզիւր այդ ուսումն, եթէ

Թագաւորք և քաջ զօրավարք՝ սպանեալք ’ի պատերազմի, յառնել կարեն.

Եւ յառնեն՝ օգնականութեամբ աստուածոց.

Եւ օգնականութիւն աստուածոց՝ էր լիզուլ զվէրս սպանելոցն,

Եւ լիզելովն կենդանանային.

Եւ աստուածոցն այնոցիկ անունն՝ Արալէզ լինէր առ նախնիս Հայս:

Գոյութիւն վարդապետութեանդ առ Հայս ապացուցանի վերոյիշեալ երկու հատուածովքն, յորոց մին առ Արայն մեր վերաբերի, իսկ երկրորդն՝ առ զօրավարն Մուշեղ: Յերկոսին ’ի դէպսդ յառնեն արքային և քաջի զօրապետին քարոզի:

Զայդ և յառասպելսն Պղատոնի տեսանեմք. քանզի Էր յառնէ:

Մոլորութիւն էր Հայոց զքաջ անկեալն ’ի պատերազմի տանել ’ի տուն իւր և հանել զդի նորա՝ կամ ’ի վերնատուն ապարանից՝ որպէս զԱրայն, կամ ’ի տանիս աշտարակի՝ որպէս զՄուշեղն:

Զայդ և առ Պղատոնի տեսանեմք. քանզի զդի Լուսոյ հանեն 'ի խորոյ, որ է բարձրադէզ կոյտ փայտից. որ և զօրութեամբ միևնոյն է ընդ վեր- նատան ապարանից կամ տաճարաց աշտարակի. մինչ բանիւ՝ հանէին զդի տապանելոյն 'ի բարձրաւանդակ տեղի։

Յաւելցուք առ այս և զգուշութեան տպաւորութեան յա- րանցեալ առ հինն մեր, որով ակն յանդիմանն ցուցանի հայութիւն հեթանոսական ուսմանց։

Արժան է այժմ 'ի վերայ բերել, «եթէ չնաւ ստուգելին որ առ Պղատոնի, այն է՝ հոգի՝ անձնաւոր 'ի պտղաբերովն, յառնելն, ոչ այլ ինչ է բայց եթէ բուն հեթանոսական վարդապետութիւն նախնի Հայոց։»

Զկնի այսորիկ կարևոր է որոշակի ցուցանել, եթէ ո՞ւր իցէ արդեօք Հայ Էրն առասպելին Պղատոնի։ Խնէև ճշմարիտ է ասածն Կուզէնի, «համգամանք ժամանակի և տեղւոյ խառն գոլով յոյժ, անհնարին լինի ամենևին առաջարկել զառասպելս որ և է կարծիք.» սակայն մեզ՝ զկնի յայտնի ցուցանելոյ զհա- Հայութիւն իմաստին պղատոնեան առասպելին և զնոյնութիւն նորին ընդ որում զԱրայէ երգէին վիպասանք, ոչ անտեղի թուի՝ զԷրն յոյն փիլիսո- փային Արայն Հայկազուն քարոզել։ Եւ այսմ ար- դարև այսպէս պարտ է լինել, քանզի այդ առասպել յաղագս վերադառնալոյ արքային Հայոց 'ի կեանս՝ գոլով մին 'ի հնագոյն աւանդութեանց հնոյն Ասիոյ, 'ի Հայաստան աշխարհէ տարեալ երևի յԱսորոց յերկիր իւրեանց, ուստի և տարածեալ ընդ ողջոյն

Արեւելու։ Իսկ Պղատոնի 'ի ժամանակս Ճանապար- հորդութեան իւրոյ ժողովեալ՝ յօնացուցեալ է զայն, 'ի բաց թողլով զմանրամասն հանգամանս նորին։

Իսկ Պամփիլեայէր անուն, զոր 'ի վերայ Էրայ կամ Արայէ ասի՝ նշանակէ և ոչինչ. քանզի այդ- քան հնագոյն անգիր աւանդութեան (1419 ամօք նախ քան զՊղատոն)՝ դարուց 'ի դարս անցանելով և յազգաց յազգս, հարկաւ պարտ էր փոփոխիլ ըստ արտաքին ներգործութեանցն. այնինչ հին նորին, որ գլխաւո- րըն է, անայլայլելի է մնացեալ։

Առ մատենագիրս յետին ժամանակաց, որպիսիք են Կղեմէս, Եւսեբիոս, Մակրոբիոս և այլք, նոյն- պէս տեսանեմք յիշատակութիւն առասպելիդ՝ աղա- ւաղեալ և ըստ քմաց փոփոխեալ։ 'Ի սոցանէ ումանք՝ որպէս ասացաք, ոչ դանդաղեցան Զրադաշտ քարո- զել զԷր։ Կարծիք դոցա չէ ամենեւին արժանի ուշադրութեան. քանզի 'ի գրոց Պղատոնի առեալ զառասպելն՝ ըստ կամաց յեղափոխեալ առաջարկեն զայն։ Այլ զարմանք այն է, զի ընդ նոսին և իմաս- տուն Ղ. Ինճիճեան՝ յումպէտս ժամավաճառ լինի, միջամուխ լեալ 'ի քննութիւն բայից և բանից յի- շեալ հեղինակացդ, 'ի գիրս նոցա գտանել ջանալով զԷր նահապետ մեր ([100]), զոր նոքա իբր թէ Զրա- դաշտ անուանեն։ Պարտ էր նմա քննել ոչ զբանս Կղեմէսի, Մակրոբիոսի և այլոց, այլ յառել զմտա-

---

([100]) Ղ. Ինճիճեան. Հնախօս. հատ. Գ. եր. 66։

տես աչս մտաց իւրոց 'ի բանս Պղատոնի, որ աղէխուր է հարծեալ նոյին ամենեցուն։ Այլ զինչ արդեօք պարծանք մեզ, եթէ Զրադաշտ ոմն Հայ իցէ լեալ։ Վասնզի որ բուն Զրադաշտն է, որում և ընծայեն զմատեան կրօնից Պարսից՝ Զենդաւեստա կարդացեալ, ապաքէն չէր Հայ։ Իսկ այլ ամենայն Զրադաշտք՝ թէ՛ Հայ իցեն և թէ՛ ոչ, քանզի աննշանք ոմանք են, զինչ մեզ փոյթ։

'Ի շարս երգոցս երրորդ կարգի դասեսցուք և զայն, զոր 'ի Հադամակերտի զԱսորի գաղթելոցն 'ի զարմէ Սենեքերիմայ պատմէին. զորս 'ի գալ նոցա յաշխարհ մեր՝ բնակեցոյց Սկայորդի զկողմամբք Ասորեստանի։ »'Ի սոցանէ պերճքն յետոյ ուրեմն՝ ըստ Խորենացւոյ, մտերմութիւն վաստակոց առ թագաւորսն մեր ցուցեալ, բդեշխութիւն կողմանցն արժանաւորեցան առնուլ [101]։« Իսկ յաւուրս Վաղարշակայ կարգեցան և սոքա 'ի թիւս նախարարաց Հայոց, որոց և պաշտօն էր՝ արծուէս կրել առաջի թագաւորին։ Աստի յառաջեկեալ ասէ Վրերթողահայրն և անուն ազգին Արծրունեաց, զոր ստուգաբանէ ասելով, եթէ »զԱրծրունիսդ գիտեմ՝ ոչ արծրունիս, այլ արծուէ ունէք։« որ գեղեցիկ յարմարանք են վսեմ մտաց ծերունւոյն Խորենայ, և ոչ

---

[101] Խորեն. Գիրք Ա. Գլ. ԻԳ։

ճշմարտութիւն։ «Բանզի զայդ անուն՝ կամ լաւ ևս ասել Տաճկաստան, որպէս 'ի համառօտեալ բանից Եզրգոյս երևի, նախ քան զթագաւորելն Վաղարշակայ ընկալեալ էր զաւրմին Սենեքերիմայ 'ի Հայոց աշխարհի, և այն ըստ դիպաց։ «Բանզի ասէին, եթէ եղև յաւուր միում այնինչ պատանի ոմն վաստակաբեկ 'ի տանէն երևելի Ասորի գաղթականացս այսոցիկ ննջէր 'ի բացի, մինչև սկսաւ գալ. և ահա թռուցեալ երևեցաւ յօդս արծուի, որ և եկաց անշարժ 'ի վերայ մանկանն՝ տարածեալ զթևս հովանի նմա։ Եւ ապա իբրև դադարեցաւ անձրևն, այրել սկսանէր արևն. և մանուկն 'ի քուն կայր, իսկ արծուէն սաւառնաթև և 'ի տօթոյ արևուն պաշտպան լինէր նմա։—Ասորի և Արծրունիք անուն, որ այնուհետև 'ի վերայ զաւրմին Սենեքերիմայ՝ 'ի Հայս եղելոց, ասացաւ։ Յոյր սակս և 'ի Հադամակերտի, որ ոստան էր Արծրունեաց 'ի Վասպուրական Նահանգի, պատմէին »Եթէ մանկան նիրհելոյ անձրև և արև հակառակեալ, և հովանի արծուոյ պատանւոյն թալկացելոյ ([102])։«

Այսպէս ահա թևամուխ լեալ 'ի հնութիւն դարուցն անցելոց՝ գուն գործեցի որդիական սիրով զաստածս հնոցն մերոց՝ զթերին և զհատուկտորն ,

---

([102]) Խորէն. Գիրք Բ. Գլ. Է։

զօրքազան նշխարս հազարամէից, զցրիւ անկելայն 'ի գանձարանի ազգիս՝ 'ի Պատմութեան ատեամ Մ՝ովսիսի Խորենացւոյ, 'ի մի ժողովել (զուցէ առաւել քան զչափն ձկտեցայ), համարձակեցայ զանեայ մնաամբք իւիք 'ի նորոյ վերականգնել զհինն 'ի վեր տապալեալն զարմանակերտ շինուած Նորգոյն վիպասանաց, նման Տանչանն Մ֊որգզեւե, որ անոտ ուրեմն 'ի հնումն

» Հատուած գրնացեալ...
'Ի Տուհաց զաւառէն
Օ՝Թասաղ գետով.
Նկեալ նըստեալ
Ը՝զՇ՝րեշ բըլըրով
Օ՝Ըրոխմէդ քաղաքաւ
Ը՝զ՝Թասաղ գետով,
Սոէւ Հոէէւ ըղզուոն
Նըրուանդայ որդւոյն (103)։«

(103) Նոյն, Գեղր Ը. Գւ. ԿԵ։

Մնայ մեզ առեալ շնորհ և ՚ի չքնաղ օրինակ նուա-գարանաց երգէին երգիչք մեր ՚ի հնումն զազգա-յին վէպս։

Պարտ էր ապաքէն վիպացս այսոցիկ՝ պարունակո-ղաց յինքեանս զպատմութիւն ազգիս, տարածեալ լինել ընդ բոլոր Հայաստան։ Սակայն առաւել քան յայլ մասունս՝ պահպանեցան նոքա ՚ի Տարօնական կողմանս գինաւէտ գաւառէն Գողթան։ Ըստ Քերթողահօրն Եր-գիչք Գողթան անբաւ են յերգոց վիպասանաց․ քանզի ուր բանք են նորա զյետնոցս՝ անդ և զանուն առաջնոց անշուշտ գտցես։

Մտադիւրութեամբ ընթեռնլով զայնոսիկ տեղիս ՚ի Պատմութեան Խորենացւոյ, յորս զազգային երգոց են խօսք, նկատեմք ՚ի նոսին զյետագայ բանս՝ Արգէն, Պաւանդական, Յաւոյ, Պար և Շամբէին։ Բացատրու-թիւն միոյ միոյ ՚ի բանիցս ինքնին ցուցցէ շնորհն երգելոյ զվէպս առ հինսն մեր։

ա․ Որովհետև առ նախնիս մեր ՚ի հնումն գիր ոչ գոյր ՚ի միջի, հարկ էր ապաքէն վիպացն մերոց պահպանիլ աւանդութեամբ և եթ․ որք և չափաբե-րական բանիւ գոլով՝ յայտարարք գործոց նահապե-տաց և թագաւորաց, ՚ի հանդէսս ժողովրդոց երգեալ

հնչէին 'ի լուր հասարակաց։ Զայս յայտ առնեն բանք Խորենացւոյ. »Զայս երգէին ոմանք բամբռամբ՝ լուաք իսկ ականջօք մերովք (104)։«—»Զորմէ ասէին 'ի հինսն մեր, որ բամբռամբն երգէին (105)։«—»Զայս տեղի տռփաբելաբանելով վիպասանքն յերգելն իւրեանց ասեն (106)«։ Եւայլն։

Ուրեմն Երգչաց էր գործ երգել առաջի ժողովրդեան ռմկական ոճով։

Բ. Ըստ նորին Խորենացւոյ տեսանեմք զկերտագայ բան. »'Ի Գուսանականքն այս գաւառի ժողովեալ 'ի դիւանի արքունեաց (107)։«—զոր Սոր Սաուարանն չգիտեմ եթէ վասն մեկնաբանէ »երգոց յերգոց արձանագրելոյ (108)։« Ըստ մեզ գուսանական ոչ նշանակէ երգ արձանագրելոյ, այլ որովհետեւ գուսանական է յոգնակի գուսան բառի (որպէս պօրտական, ռամկական) եւ գուսան առ մեզ զխաղացողն 'ի թատրոնի կամ նուագերգուն յայտ առնէ՝ յոյր սակս առաւել յարմար թուի մեզ ընդ անուամբդ՝ զերգիչ խաղացող իմանալ, որք առաջի ժողովրդեան 'ի հրապարակս չնայեցուցանէին զպարունակեալն յերգս վիպասանաց՝ որպէս եւ առ զանազան նախնի ազինս։ Եւ զայս ապացուցանէ

(104) Գիրք ա։ Գլ. լա։

(105) Գիրք ա. Գլ. իդ։

(106) Գիրք բ. Գլ. ծ։

(107) Գիրք ա. Գլ. ժդ։

(108) Հատ. ա. եր. 582։

գ. Միւս բան Խորենացւոյ.... «յաճախագոյն հինքն Մարամազնեաց 'ի նուագս բամբռան և յերգս ցցոց և պարուց զայսոսիկ ասեն յիշատակօք»։ — Մասն եղեալ ցուց բառի երկրորդ ձևն է ցոյց, որ արմատ է բայիս ցուցանեմ, և նշանակէ զգործողութիւն գուսանին, որով սա հանդիսացելոց զգործս որևէ անձին ցուցանէ (представленіе, représentation), և ոչ՝ որպէս Նոր Բառարանն ինքնակամ նոյնացուցանէ զայդ անուն ընդ ցուանցք (109) բառի։

դ. Երկրորդ բառ 'ի վերոյիշեալ բանիդ՝ է Պար, որոյ բուն սկզբնական նշանակութիւն է շրջան, որ և 'ի բանս Խորենացւոյն զնոյն ունի նշանակութիւն, որպէս և յունականն կէկլօ (կէկլօ էղէկօ)։ Ուրեմն Սէրգք ցցոց և պարուց» ոչ այլ ինչ յայտ առնէ, բայց եթէ երգք գուսանաց և երգչաց՝ վէպք առողջ ծաղրածուաց, կենդանի պար առնելոյ։ «

է. 'Ի նուագարանաց, որովք երգէին երգիչք մեր՝ յիշատակի 'ի պատմութեան Խորենացւոյ միայն Բամբիռն։ Զայս բառ ոմանք ծնծղայ ստուգաբանեն (տե՛ս Նոր Բառար.) ոմանք՝ կէթառ (տե՛ս Հին Բառար.)։ Ոչ մին և ոչ միւսն հաւանական թուի մեզ։ Ճշդիւ ցուցանել զիսկութիւն նուագարանիդ չէ դիւրին. զայս միայն համարձակ ասել կարեմք, եթէ բամբիռն հնոց չէր ծնծղայ, այլ նուագարան լարեալ և աղեօք հանդերձ։ Խորենացի զկնի բերելոյ զերգն Վահագնի՝

---

(109) Հատ. Բ. եր. 917։

ասէ. »զայս երգելով ամենից ժամէ ի ժամէ լուաք իսկ ականջօք մերովք։ «— Յովհաննէս կաթողիկոս ([110]) զնոյն բան Քերթողահօրն երկրորդելով յաղագս Սահագնի՝ զնուագարանն որոշէ »չփոփոխական աղե- կաւս« անուանելով զայն։ Ընթե չփոփոխական աղեկաւս, ապա ուրեմն և ոչ ծննդոյ։

Այլ առա զկայ առցէ բանս։



([110]) Յովհ. Կաթ. Պատմ. Հայոց, յԵրուսաղէմ, 1843, եր. 14։ »Տեառն ծնեալ որդի պՄարէ, պՏեառն, պՍահակն, զոր 'ի կանոնցահայր աղերսաւս ընդ վերջապաց համբառեէին հառաւեալ նմա և յաղթել, և ընդ տաղին Հերակլեայ նահապահուբենանցն զնա համե- մատել։ «

# Ծանօթութիւն.

| Երես, | տող. | Տպեալ է | Ընթերցիր |
|---|---|---|---|
| 16, | 8 'ի ներք. | գերեանցն՝ | գերեաց |
| 38, | 8 'ի ներք. | վեպասանքն | վիպասանքն |
| 60, | 2 'ի վեր. | Պասամութեան | Պատմութեան |